# Սոնա Հովհաննեսյանի պատանեկան ապրումների գունաշխարհը



Երբ շփվում ես երեխաների հետ, հասկանում ես, որ չափահաս դառնալով կորցնում ես զարմանալի մի աշխարհ՝ պայծառ, մաքուր և տաք:

Ինչպես չափազանց պարզ, այնպես էլ անիմանալիորեն բարդ է պատանեկան հոգին՝ գունավոր երազներով, ինքնատիպ մտածողությամբ, զգայուն ու անմիջական:

Այդ ինքնատիպ ու նրբին աշխարհում է ապրում մեր այսօրվա հյուրը՝ Վանաձորի Ստ. Աղաջանյանի անվան Գեղարվեստի դպրոցի սան Սոնա Հովհաննեսյանը:

Ջերմություն կա նրա ներկայացված աշխատանքներում, պատանուն վայել խանդավառություն և պատանեկան ավյուն, լավատեսություն, հավերժ փոփոխվող բնության, լույսի և ստվերի անվերջ պայքարի տարերք:

Երևի թե լոռվա անկրկնելի բնությունն է ոգևորում նրան, երևի թե մարդ-բնություն համերաշխված դաշինքից են ծնվում նրա նկարները, քանզի առանց կենդանի հույզերի և զգացողությունների դժվար թե նրա պատանեկան ապրումների մաղից այսպիսի պատկերներ ծորային: Ուրախացնում է նրա անկաշկանդությունը, ուրույն վերաբերմունքը երևույթների նկատմամբ:

*Արսեն Ռաֆայելյան, դպրոցի տնօրեն, ՀՀ նկարիչների միության անդամ.*

*- Սոնան այսօր մեր դպրոցի ավարտական դասարանի սան է և որոշել է իրեն նվիրել կերպարվեստին (երազում է ուսումը շարունակել գեղարվեստի ակադեմիայում), քանզի այլ կերպ չի պատկերացնում իր կյանքը: Աղջնակն առաջին իսկ օրվանից տարբերվում էր մյուսներից ինքնուրույն և ինքնատիպ մտածողությամբ: Այսօր նրա վրձինը համեմվել է հայաստանյան արևահամ գույների հյութալի և բազմերանգ վրձնախաղով և գնալով ավելի ամուր և հաստատ են դառնում նրա վրձնահարվածները:*



Այսօր նրա նկարները գունեղ են ու պայծառ, շնչում են լավատեսությամբ ու կյանքի բերկրանքով: Հուսանք, որ Սոնայի վաղը, նրա կյանքի ճանապարհը կլինի իր նկարների նման լուսավոր ու գեղեցիկ...

***Լեւոն ԽԱՉԱՏՐՅԱՆ***





# ՀԱՅԱՍՏԱՆԻ ԱՆՎՏԱՆԳՈՒԹՅՈՒՆՆ ՈՒ ԱՊԱԳԱՆ

Արդեն քսան տարի է, ինչ Հայաստանն անկախ է: Սակայն զարմանալի չէ՞, միթե, որ գրեթե երկու տասնամյակ անկախությունից հետո կրթված եւ աշխատունակ իր ժողովրդով երկիրը դեռեւս գտնվում է տնտեսական տագնապի մեջ:

Ճիշտ է, որ Հայաստանը շրջափակված երկիր է, սակայն անկախ այդ իրողությունից, պետությունը տնտեսապես հաջողակ է, եթե ղեկավարությունն է իմաստուն: Նրանք պետք է տոգորված լինեն հայրենասիրությամբ ու ազգասիրությամբ, որը կպաշտպանի Հայաստանը մեկաշխարհական պղծումից (Մեկ Աշխարհի Իշխանության ստեղծումն ու բոլոր ազգերի ոչնչացումը):

Ազգային տեւական բարօրություն ստեղծելու շատ կարեւոր մի ազդակ է ապահով եւ պարկեշտ դրամական համակարգ ունենալը՝ հիմնված 100 տոկոսով ոսկու պաշարի վրա: Եթե ժողովուրդը ոսկի ունի կամ ապահովություն, որ հարկ եղած դեպքում կարող է ազատորեն իր պետական թղթադրամը փոխել ոսկու, ապա այդ ժողովուրդը ունի՝ այն, ինչ որ կոչում են վետոյի ուժ, այսինքն՝ իր քաղաքական առաջնորդների կասկածելի դրամական գործառնությունների վրա արգելք դնելու, վետոյի հնարավորություն եւ իրավունք: Ճակատագրական սխալ էր Հայաստանի ոսկու հանքերի շահագործումն օտարներին հանձնելը: Քաղաքական գործիչները պետք է պահպանեն ամբողջ ժողովրդի բարօրությունը: Նրանք պետք է ներշնչեն գյուղացուն, որպեսզի վերջինս զգա, որ ինքն էլ կառուցվող պետության մի մասն է: Եթե քաղաքական գործիչները պաշտպանեն երկրի քաղաքացիների ազատության իրավունքը, իրենք եւս կշահեն՝ այդ նույն ազատության օդը շնչելով:

Ոչ մի անհատ իրավունք չի կարող ունենալ ինքնակամ որոշելու ազգի ճակատագիրը: Այսօր այն, ինչ տեղի է ունենում Հայաստանի տնտեսական բնագավառում, միայն անհատական ագահության հարց չէ: Դա շատ ավելի ծանրակշիռ երեւույթ է: Հայաստանն իր տնտեսությունը կարգի բերելու համար այնպիսի աղբյուրներից է ֆինանսական փոխառություններ ընդունում, որոնք միայն երեւութապես են շատ հրապուրիչ եւ դյուրամատչելի, մինչդեռ իրականության մեջ խիստ վտանգավոր են, քանի որ նպատակաուղղված են շահագործելու եւ կեղեքելու երկրի արդյունաբերությունը:

Արժույթի միջազգային հիմնադրամին եւ Համաշխարհային բանկին պետությունը պետք է վճարի խոշոր տոկոսագումարներ, որոնք պետության տնտեսությունը քայքայելու գործիքներ են: Երկրի վրա դրված խիստ ծանր պայմաններն այնպիսին են, որ երկրի առաջընթացը կասեցնում են, օրինակ կառավարությանը պարտադրելով, որ քաղաքացիներից նոր ու ավելի ծանր տուրքեր պահանջի: Միայն ազատ ժողովուրդներն են ստեղծում իրական հարստություն, որն էլ իր հերթին հարուստ ու բարեկեցիկ պետություն է ստեղծում:

Այս ամբողջի բուն նպատակը վերջին հաշվով հայկական ոգու եւ հայ ազգի ծրագրըված քայքայումն է, երկրի բնակչության պակասեցումը եւ Հայաստանը «միջազգային մի հողամաս» դարձնելն է:

Եթե կառավարությունը մերժի ընդունել Արժույթի միջազգային հիմնադրամի եւ Համաշխարհային բանկի հատկացումները, ապա այդ ուժերը կարող են երկիրը կանգնեցնել այդ նույն ֆինանսական աղբյուրներից դրամական օժանդակություն ստացող դրացի որեւէ երկրի կողմից պատերազմ սանձազերծելու վտանգի առաջ:

Արժույթի միջազգային հիմնադրամը եւ Համաշխարհային բանկը հմտորեն ծրագրում եւ վարպետորեն գործադրում են այս կամ այն երկրի տնտեսական եւ հասարակական կառուցվածքի փլուզումը՝ այդ երկիրը հասցնելով ստրկական վիճակի:

Հարցն այժմ հետեւյալն է. արդյո՞ք Հայաստանն իր ճակատագրի տնօրինումը պիտի զիջի համաշխարհային ոչ ընտրյալ մի դիվանակալության, որի նպատակն է հետեւողականորեն շարունակել մեր երկրին պարտադրել այն քաղաքականությունը, որն արդեն երկրում առաջացրել է համատարած տնտեսական քաոս:

Կամ արդյո՞ք Հայաստանը պիտի կարողանա իրեն վերապահված իրավունքով ընտրել մի այնպիսի կառավարություն, որն իշխանություն ունենա միջազգային ֆինանսական կապիտալիզմի անողոք շահագործումից պաշտպանելու իր ժողովուրդը եւ իր երկրի բնական հարստությունները:

2004 թվականի մայիսի 5-ին Հայաստանի Կենտրոնական բանկի նախագահ Տիգրան Սարգսյանը հայտարարեց, որ ՀՀ ԿԲ-ն այլեւս ոսկի չի կուտակելու, քանի որ ոսկին պահելը չափազանց փոքր եկամտաբերություն ունի: Այնուհետեւ նա վաճառեց 1.4 տոննա ոսկի՝ մեկ ունցիան 400 ԱՄՆ դոլարով (ընդ. 18 մլն դոլար): Ներկայիս դրությամբ՝ սույն թվականի հունվարի 6-ին, ոսկու գինը 1120 ԱՄՆ դոլար է՝ մեկ ունցիայի համար: Այսօր դա կկազմեր 50 մլն ԱՄՆ դոլար: Հայաստանի կառավարությունը պետք է պաշտպանի ոսկու հանքավայրերը: Դրանք պատկանում են ժողովրդին: Դա կարող էր ապահովել ժողովրդի դրամի արժեքը:

Ինչպե՞ս կարող ենք ասել, թե պատվում ենք մեր քրիստոնյա նախնիներին եւ շարունակել գումարներ ստանալ անարդար դրամական համակարգերից, երբ Քրիստոս տաճարից վռնդեց կեղծավոր առեւտրականներին, իսկ չորս օր անց խաչի արժանացավ: Քրիստոս «փոխզիջումներով» չէր զբաղված: Ամեն մի ժողովուրդ պետք է գտնի դեպի համաշխարհային պարտքերի ստրկության շղթաներից ազատ, կայուն եւ ամուր հասարակություն տանող իր սեփական ուղին:

***Արփավազդ ԱՎԱԳՅԱՆ***,
*Բոքա Ռեյթըն, Ֆլորիդա, ԱՄՆ , Հունվար 6, 2010 ardavast@att.net*

***Հ.Գ.*** Ես 92 տարեկան եմ: Իմ հայր Միքայելը Միացյալ Նահանգներ է գաղթել Խարբերդից՝ 1892 թվականին, մայրս՝ Ազնիվը, Խարբերդից եկել է 1905 թվականին: Ծնվել եմ Միչիգան նահանգի Դեթրոյթ քաղաքում: Ես երգում էի մեր Սբ. Սարգիս հայկական եկեղեցում եւ աղոթում ազատ ու անկախ Հայաստանի համար ողջ կյանքումս:

# ՀԱՄԱՅՆՔՆ ԻՆՔՆ Է ՈՐՈՇԵԼՈՒ

**Առաջիկա ամիսներին պետք է տեղի ունենա Պոլսի 85-րդ աթոռակից պատրիարքի ընտրություն, եւ ներկայումս թեժ պայքար է ծավալվել երեք թեկնածուների միջեւ:**

**«Միամտություն կլինի կարծել, թե Թուրքիայի իշխանությունները որեւէ քայլ չեն անի ներհամայնքային խնդիրների ուղղությամբ, անշուշտ, իրենց ցանկալի թեկնածուի համար որոշակի քայլեր կանեն կամ հակաքայլեր կնախաձեռնեն ոչ ցանկալի թեկնածուի դեմ: Սակայն պատրիարքական ընտրությունները եւս իրենց նախադեպերն ունեն եւ ոչ միշտ է եղել, որ ցանկալի թեկնածուն է ընտրվել:**

**Ես չեմ ուզում չափազանցնել թուրքական մեքենայի դերը այս ընտրություններում եւ առավելապես ուզում եմ հավատալ, որ համայնքն ինքն է որոշելու, թե ում ընտրի հովվապետ», - ասում է թուրքագետ ՌՈՒԲԵՆ ՄԵԼՔՈՆՅԱՆԸ:**

## ՊՈԼՍԱՀԱՅ ՀԱՄԱՅՆՔԸ ՈԳԵՎՈՐՎԱԾ Է ԳՈՒԳԱՐԱՑ ԹԵՄԻ ԱՌԱՋՆՈՐԴՈՎ

**Հարցազրույց թուրքագետ, ԵՊՀ արեւելագիտության ֆակուլտետի դեկանի տեղակալ ՌՈՒԲԵՆ ՄԵԼՔՈՆՅԱՆԻ հետ**

*-Ինչպես հայտնի է, Պոլսո հայոց պատրիարք Մեսրոպ Մութաֆյանը անբուժելի հիվանդությամբ է տառապում, և, ըստ ներեկեղեցական օրենքների, նախատեսվում է աթոռակից պատրիարքի ընտրություն: Ե՞րբ է ընտրությունը տեղի ունենալու և ի՞նչ սկզբունքով:*

- Անցյալ տարի Պոլսո հայոց պատրիարքարանի հոգևոր խորհուրդը դիմել է Ստամբուլի նահանգապետարան՝ խնդրելով թույլ տալ անցկացնել աթոռակից պատրիարքի ընտրություն: Ըստ թուրքական օրենսդրության, հենց Ստամբուլի նահանգապետարանն է թույլատրում պատրիարքի ընտրությունը և նշանակում օրը: Դիմումը տրվել է տարեվերջին, սակայն մինչ այժմ Ստամբուլի նահանգապետարանը որևէ կերպ չի արձագանքել, այսինքն` պաշտոնապես նշված չէ ոչ օրը, ոչ էլ մոտավոր ժամանակը: Այդուհանդերձ ենթադրվում է, որ ընտրությունները կանցկացվեն մայիսի 12-ին:

Ըստ Թուրքիայի օրենսդրության, պատրիարք կարող է ընտրվել այն անձը, որը կամ Թուրքիայի քաղաքացի է, կամ այդ երկրում է ծնվել, կամ նրա հայրն է թուրքահպատակ եղել: Եվ այսօր հստակ առաջադրված են այդպիսի երեք թեկնածու, Հայաստանի Գուգարաց թեմի առաջնորդ Սեպուհ եպիսկոպոս Չուլջյանը, Գերմանիայի հայոց թեմի առաջնորդ Գարեգին արքեպիսկոպոս Բեկչյանը և Պոլսո հայոց աթոռը ներկայացնող Արամ արքեպիսկոպոս Աթեշյանը:

➲4

3Ա

*- Ի՞նչն է պատճառը, որ Ստամբուլի նահանգապետարանը ծգձգում է ընտրությունների նշանակումը: Ինչ-որ միտում, ենթատե՞քստ կա, թե՞ սոսկ քմահաճույք է:*

- Պոլսի հայոց պատրիարքարանի հոգևոր խորհուրդը դիմել է Ստամբուլի նահանգապետարան՝ խնդրելով աթոռակից պատրիարք ընտրելու թույլտվություն, քանի որ կաթողիկոսներն ու պատրիարքներն ընտրվում են ցմահ, և այս դեպքում պետք է աթոռակից պատրիարք ընտրվի: Սակայն համայնքի ներկայացուցիչներից ձևավորված է պատրիարքական ընտրությունների նախաձեռնող խումբ և իր հերթին դիմել է Ստամբուլի նահանգապետարան՝ նշելով, որ պետք է պատրիարքի ընտրություն անցկացվի, ոչ թե աթոռակից պատրիարքի:

Ինչ-որ տեղ արհեստականորեն քննարկվող այս հարցը համայնքում առաջացրել է լուրջ հակասություններ և բախումներ: Կարծում եմ, որ Թուրքիայի իշխանություններն անմասն չեն այս գործընթացից, քանի որ նոր բաժանարար գծերի, նոր խնդիրների ի հայտ գալը նպաստելու է թուրքական իշխանության քաղաքականությանը և դեմ է լինելու պոլսահայ համայնքի միասնությանը: Այս երկու դիմումները հնարավորություն են տալիս Ստամբուլի նահանգապետարանին հիմնավորելու ընտրությունների նշանակման ձգձգումը:

*- Ինչպե՞ս կբնորոշեք թեկնածուներին, նրանցից որի՞ ընտրվելն է առավել անհրաժեշտ Պոլսո հոգևոր հովվի պաշտոնում և ինչո՞ւ:*

- Պոլսո հայ համայնքը զգուշավոր, նաև ինչ-որ տեղ վախվորած է, այնպես որ համայնքային, կրոնական և ազգային հարցերի նկատմամբ մեծ ակտիվություն չի ցուցաբերում: Միաժամանակ համայնքը կանգնած է բազմաթիվ մարտահրավերների առջև, մասնավորապես լեզվական խնդիրն է առկա, երբ համայնքի երիտասարդության մեծ մասը, ըստ վերջին հետազոտության, թրքախոս է, երբ համայնքի դպրոցների թիվը կտրուկ նվազում է, այսօր 17 դպրոց է մնացել նախկին 36-ից, աշակերտությունը նույնպես նվազում է, քանի որ ծնողները նախընտրում են թուրքական դպրոցը:

Պատրիարքարանի կարգավիճակը Թուրքիայում դեռ հստակեցված չէ, բացի այդ ունի եկեղեցիները սպասարկող հոգևորականների պակաս: Այս ամենը որպես սկզբնակետ ունենալով՝ պետք է նշել, որ համայնքի պասիվությունը ինչ-որ տեղ բերել է նաև ճահճացման, համայնքը հստակ բռնել է անկման ուղին և, եթե դեպքերն այսպես զարգանան, կանգնելու է կործանման եզրին: Անհրաժեշտ է մի ակտիվ հովվապետ, որը գոնե կձգտի այս խնդիրները լուծելու ուղղությամբ աշխատանքներ տանել: Շատ բան կախված է նաև համայնքից, քանի որ իրենք են ընտրելու այդ հովվապետին:

Երեք թեկնածուներից Արամ սրբազանի վերջին հայտարարությունը նոր ջրբաժաններ առաջացրեց ստամբուլահայության, սփյուռքահայության և Հայաստանի հայերի միջև: Մասնավորապես նա նշել է, որ ստամբուլահայերին չպետք է խառնել սփյուռքահայերի և Հայաստանի հայերի հետ, նրանք Թուրքիայի քաղաքացիներ են և նրանց հարազատ է Թուրքիայի պետությունը:

Գերմանիայի թեմի առաջնորդ Գարեգին սրբազանը համայնքի հետ ունեցած հանդիպումների ժամանակ նույնպես հեղափոխական լուծում կամ առաջարկներ չարեց:

Իսկ Գուգարաց թեմի Սեպուհ սրբազանը, որ թեկնածուներից միակ ՀՀ քաղաքացին է, քաջատեղյակ է համայնքի խնդիրներին և պատրաստակամ է դրանք լուծել: Քարոզարշավի ժամանակ մասնավորապես բուռն քննադատությամբ հանդես եկավ լեզվի անկման վերաբերյալ, քննադատեց խառը ամուսնությունների խնդիրը և հայտարարեց, որ պատրաստ է բարեփոխումների:

Սեպուհ սրբազանի քարոզարշավից հետո պոլսահայ համայնքում նկատվում է լուրջ ոգևորություն, ակտիվություն, և շատերը կարծում են, որ նրա մասնակցությունը նախընտրական արշավին բեկումնային նշանակություն ունեցավ, քանի որ արդեն սաղմեր են նկատվում, որ համայնքը կարող է արթնանալ և լուրջ քայլեր կատարել:

*- Երեք թեկնածուներից ո՞վ ավելի հնարավորություն ունի համապատրիարք ընտրվելու, ո՞ւմ կողմն է համայնքի համակրանքը:*

- Թուրքական իշխանություններին ձեռնտու է այնպիսի թեկնածու, որը ավելի կառավարելի կլինի և թույլ կտա, որ համայնքի պասիվ վիճակը նույն կերպ շարունակվի, ու այդ թեկնածուն, կարծում եմ, որ Արամ սրբազանն է: Բայց, քանի որ ընտրությունը կատարելու է հայ համայնքը և Սեպուհ սրբազանի այցելությունից հետո ակտիվություն է նկատվում, ենթադրում եմ, որ այդ ակտիվությունը ընտրությունների վրա էլ կանդրադառնա՝ քվեներ տալու առումով: Այս պահին ընդգծված առաջնորդ կամ ֆավորիտ ընտրություններում չկա, սակայն, դատելով քարոզարշավների ժամանակ առաջացած արձագանքից և վերաբերմունքից, համայնքի համար առավելապես ընդունելի է Սեպուհ սրբազանը:

Եթե քարոզարշավի առաջին փուլը ամփոփենք, կարող ենք եզրակացնել, որ երեք թեկնածուներն էլ ունեն որոշակի հնարավորություն, բայց հաշվի առնելով ընտրողների ոգևորությունը, նախապատվությունը տրվում է Սեպուհ սրբազանին:

**Ֆելիքս ԵՂԻԱԶԱՐՅԱՆ**

# ՍԵՊՈՒՀ ԵՊՍ. ՉՈՒԼՋՅԱՆ. «ԻՐԱՎՈՒՆՔ ՉՈՒՆԵՆՔ ԿՈՐՑՆԵԼՈՒ ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԵՎ ԱԶԳԻ ԱՌՋԵՎ ՊԱՏԱՍԽԱՆԱՏՎՈՒԹՅԱՆ ԳԻՏԱԿՑՈՒԹՅՈՒՆԸ»

*Հայտնի է, որ մայիսի 12-ին Կ. Պոլսի 85-րդ աթոռակից պատրիարքի ընտրություններն են, թեկնածուները երեքն են՝ Կ. Պոլսի հայոց պատրիարքարանի հոգևոր կրոնական ժողովի նախագահ Արամ արքեպիսկոպոս Աթեշյանը, Գերմանիայի թեմի հոգևոր առաջնորդ Գարեգին արքեպիսկոպոս Բեկչյանը և Գուգարաց թեմի հոգևոր առաջնորդ Սեպուհ եպիսկոպոս Չուլջյանը: Այդ առթիվ զրուցեցինք Սեպուհ սրբազանի հետ՝ խնդրելով պատասխանել մեր մի քանի հարցերի:*

*- Սրբազան հայր, Դուք արդեն պարզաբանումներով հանդես եկել եք մի շարք լրատվամիջոցներով, այդ թվում՝ Պոլսի «Ակօս» և «Մարմարա» թերթերով, և հավաստել, որ համաձայնություն եք տվել մասնակցելու ընտրություններին: Գիտենք նաև, որ առաջիկայում մեկնելու եք Ստամբուլ՝ շփվելու հայ համայնքի հետ, ծանոթանալու այնտեղ առկա խնդիրներին: Ի՞նչ կասեիք Գուգարաց թեմի բնակչությանն այդ առթիվ:*

- Թեկնածությունս առաջադրելով՝ ամենևին հավակնություն չունեմ արժանավորագույնը լինելու: Ցանկությունս է՝ թրքահայությանն ավելի լայն հնարավորություն ընձեռել ընտրություն կատարելու: Համոզված եմ՝ որքան շատ լինեն թեկնածուները, այնքան ընտրությունն ավելի ճիշտ կլինի, իսկ ընտրյալն էլ՝ ավելի լայն հեղինակություն ձեռք կբերի և իր ուժերին առավել վստահություն կունենա: Չէ՞ որ, ի վերջո, խոսքը Հայ եկեղեցու ծոցի մեջ իր կարևորությամբ չորրորդ նվիրապետական աթոռի մասին է, իսկ այդ աթոռին բազմողն, իր կարողունակությամբ և շնորհներով, կոչված է առնվազն չորրորդը լինելու:



Շատ կուզեի, որ բոլոր թեկնածուները լիարժեք մասնակցեին ընտրությանը, և նրանց միջից ընտրվեր լավագույնը: Այդպիսով, վստահ եմ, ընտրազանգվածի իրավունքները ևս հարգված կլինեին:

*-Ըստ Ձեզ՝ տարբերություն չկա՞ աշխարհիկ և հոգևոր ընտրությունների միջև:*

- Կա՛, և պե՛տք է լինի: Քանի որ հոգևոր ընտրություններ են, մենք պարտավոր ենք մնալ հոգևոր պատշաճության շրջանակների մեջ և ջանալ, որ չնմանվեն աշխարհիկ ընտրություններին՝ իրենց հատուկ բոլոր բացասական դրսևորումներով, զանազան շռայլություններով և այլն:

*- Դուք ծնվել եք Մալաթիայում, հասակ առել Պոլիս-Ստամբուլում, այդուհանդերձ ոմանց կողմից մատնացույց է արվում Ձեր՝*

Ա5

# ԳԱՐԵԳԻՆ ԱՐՔ. ԲԵԿՉՅԱՆ. «ԿՄԱՂԹԵՄ, ՈՐ ԺՈՂՈՎՈՒՐԴԻ ՄԵԾ ՄԱՍԸ ՄԱՍՆԱԿՑԻ ԸՆՏՐՈՒԹՅՈՒՆՆԵՐՈՒՆ»

*- Սրբազան հայր, պաշտոնավարել եք Ֆրանսիայում, հետո Գերմանիայում, հիմա էլ ուզում եք վերադառնալ այնտեղ, որտեղ ծնվել եք, կրթություն ստացել՝ Պոլիս՝ մասնակցելու համապատրիարքության կամ աթոռակից պատրիարքի ընտրությունների: Ի՞նչ կասեք այս առիթով:*

- Այո, ընտրությունը, որ տեղի պիտի ունենա համապատրիարքության, դժբախտ կացության մը հետևանքն է, որովհետև Մեսրոպ պատրիարք Մութաֆյան 1998-ին երբ ընտրվեցավ, շատ խոստումնալից անձնավորություն էր և դժբախտաբար վերջին 2-3 տարիները բոլորովին անբուժելի հիվանդության ճանկերուն մեջն ինկավ և հետևաբար քանի որ կապրի, համապատրիարք ընտրելու որոշում տրվեցավ կրոնական ժողովին կողմե: Համապատրիարքության կարգ պատրիարքության պատմության մեջ չիկա, սակայն քանի որ պատրիարք մը ցկյանս կընտրվի, և մարմին մը չիկա զինք պաշտոնանկ ընելու, և ինքն ալ կարող չէ հրաժարելու իր կացության պատճառավ, հետևաբար համապատրիարքություն որոշվեցավ իրականացնել:

*- Մեկ ուրիշ խումբ սա որակում է պատրիարքական ընտրություններ:*

- Համապատրիարք ընտրելու կարծիքն ամենեն առաջ «Մարմարա» օրաթերթի խմբագրապետ Ռոպեր Հատտեճյանի գաղափարն էր, որը շատ ճիշտ գաղափար մը ըլլալով, ընդունվեցավ բոլորի կողմե, քանի որ պատրիարքը կապրի, ի հարգանս անոր, պատրիարքական աթոռի հանդեպ բոլոր համակիրներու ունեցած սերը, հարգանքը, հետեւաբար այդ բոլորը պատճառ եղան, որ համապատրիարք ընտրելու կարելիությունը



ստեղծվի և ինչպես ըսի, մարմինն մըն ալ գոյություն չունի պաշտոնապես զինքը այդ պաշտոնեն ետ առնելու, հետևաբար՝ համապատրիարքություն, իսկ ինչ կվերաբերի ընտրող հանձնախմբի կարծիքին, որուն պաշտոն հանձնված ժամանակը համապատրիարք ընտրելու պաշտոն տրված էր, բայց իրենք այդպես որոշում առեր են և առ այդ պետության դիմում կատարեր են 85-րդ պատրիարք, ոչ թե համապատրիարք ընտրելու: Թեև համապատրիարք ըսված ժամանակ բոլոր իրավասություններն ունի, ներկա պատրիարքը վախճանելե հետո ինքնաբերաբար կդառնա 85-րդ պատրիարքը:

*- Ինչպե՞ս պիտի կարողանա նոր պատրիարքը պոլսահայության սերը նվաճել: Ինչպիսի՞ խոստումներ եք տալու Ձեր ընտրողներին, որ կստիպի 3 թեկնածուներից նախապատվությունը հենց Ձեզ տալ:*

- Այդպիսի հանձնարարություն, թելադրություն ես ինքս չեմ կրնար ընել և իրավունք ալ չունիմ ընելու: Քանի որ բոլոր թեկնածուները Հայաստանյայց առաքելական եկեղեցին կներկայացնեն և արժանավոր եկեղեցականներ են, հետևաբար մեկը մյուսեն պակաս չէ: Իսկ ինչ կվերաբերի Մեսրոպ պատրիարքի տեղը լեցնելու կարողության, պետք է ըսել, որ ամեն եկեղեցական իր արժեքը, իր կարողություններն ունի, անշուշտ է՝ ոչ մեկը մյուսին չի նմանիր, բայց կրնա ըլլալ, որ պաշտոնը ստանձնելե հետո նաև իր կարողությունները մեջտեղ դնելով վերադարձնե ժողովուրդին սերը և համակրանքը, կարենա ունենալ և թիկունքը նաև: Ուրեմն եկեղեցական ամեն մի թեկնածու իր կարողությունները մեջտեղ պիտի դնե անշուշտ:

*- Կա՞ այդպիսի հնարավորություն մինչ ընտրությունը արժանիքներն ի ցույց դնելու:*

- Մինչև ընտրություն չէ, ընտրութենեն հետո իր արժանիքները մեջտեղ պիտ դնե: Մինչև ընտրություն չենք կրնար, գործունեությամբ է, որ կդրսևորվի: Միայն կարելիություն կա երեք թեկնածուները ներկայանան ժողովրդին, ինչպես ես օրեր առաջ գացի Պոլիս, քարոզներ տվի, հանդիպումներ

➲6

4➲

*պոլսահայության կյանքին անծանոթ լինելու պարագան: Ի՞նչ կասեիք այդ մասին:*

- Քավ լիցի ինձ համեմատվել Գարեգին Խաչատուրյան կամ Շնորհք Գալուստյան երանաշնորհ պատրիարքների հետ, սակայն նրանք նույնպես մինչ ընտրությունը հիմնականում անծանոթ էին պոլսահայության լայն խավերին և հայտնի էին միայն փոքրամասնությանը, այն էլ՝ Թուրքիայից դուրս իրենց կատարած գործերով: Նույնն էր նաև Գարեգին Գազանճյան լուսահոգի պատրիարքի պարագայում...

*- Ի վերջո, անծանոթ էիք նաև Լոռու և Տավուշի բնակչությանը, սակայն ավելի քան 13 տարի, Գուգարաց թեմի առաջնորդությունն ստանձնելով և թեմն ստեղծելով, զորացրիք այն՝ շուրջ 450 հազար հայ բնակչությամբ, որի մեծագույն մասն անհաղորդ էր Հայ եկեղեցուն և քրիստոնեության տարրական սկզբունքներին: Չենք կարող չասել, որ բավականին վաստակ ունեք: Վկան՝ այսօրվա բարեկարգ Գուգարաց թեմը:*

- Դո՛ւք ասացիք: Շնորհակալություն: Նշեմ միայն, որ ողջ թրքահայությունը ամբողջապես չի կարող մի եպիսկոպոսի ճանաչել, սակայն համոզված եմ, որ ընտրության գնացող պատգամավորները պատշաճ կերպով ճանաչում են բոլոր թեկնածուներին, նրանց գործերն ու կարողությունները:

*- Հետևաբար՝ հոգևոր ասպարեզում գոնե անծանոթ մեկը չեք. ցանկացողները կարող են Ձեր մասին տեղեկություններ ստանալ և՛ քաջածանոթ անձանցից, և՛ լրատվամիջոցներից, և՛ այլ աղբյուրներից:*

- Հարկա՛վ:

*- Սրբազան հայր, լոռեցիներս Ձեր հախուռն, սկզբունքային բնավորությունը և հատկապես պահանջկոտությունը շատ ենք գնահատում: Սակայն մտահոգ ենք՝ Ձեզ համար Թուրքիայում դժվար չի՞ լինի...:*

- Մտահոգության պատճառներ շատ կան: Այնտեղ պետական ճնշումներն ավելի ծանր են, քան խորհրդային տարիներին Հայաստանում էր: Ի վերջո, Ստամբուլը Գուգարաց թեմը չէ, և դա ես շատ լավ գիտակցում եմ: Պատրիարքի աթոռը վայելքի աթոռ չէ, մեղմ ասած՝ ամենօրյա նահատակություն է պահանջվում: Սակայն իմ հոգին տանջող պարտքի գիտակցումն ինձ հանգիստ չի տալիս: Նախնիներիս հիշատակի և իմ ժողովրդի նկատմամբ բազում պարտքեր ունեմ: Սա նաև մի առիթ է՝ ծառայությամբ հատուցել ստամբուլահայությանը, որ ինձ անվճար կրթել ու հայեցի դաստիարակություն է տվել: Այս պահին դժվարանում եմ ընտրությունների ընթացքի և արդյունքի մասին որևէ բան ասել: Նշեմ, սակայն, որ ես ծնունդով մալաթիացի եմ, քաղաքացիությամբ՝ հայաստանցի, և իմ թեկնածության նկատմամբ, անշուշտ, վճռորոշ են Թուրքիայի կառավարության վերաբերմունքն ու հայ համայնքի կեցվածքը:

Խորհուրդ մարդկանց, կամք Աստուծո: Ինչ որ լինելու է, թող Տիրոջ կամքով լինի:

Իսկ գալիք ընտրությունների առիթով իմ հոգևոր եղբայրներ Գարեգին և Արամ սրբազաններին, և, եթե կլինեն այլ թեկնածուներ, բոլորին իմ եղբայրական անկեղծ սերն ու հարգանքն եմ փոխանցում: Աղոթում եմ, որ Մայր աթոռ Սուրբ Էջմիածնում կատարած իրենց ուխտին հավատարիմ՝ անխռով ու անսասան շարունակեն ծառայել մեր Սուրբ եկեղեցուն ու բարեպաշտ ժողովրդին: Մենք իրավունք չունենք կորցնելու պատմության և ազգի առջև պատասխանատվության գիտակցությունը: Պիտի առաջնորդվենք՝ պատմական պահի լրջությունը նկատի առնելով: Այս պարագայում կարևորը ոչ թե պատրիարքի գահին հասնելն է, այլ գահի ընձեռած հնարավորություններն ազգի ու ժողովրդի բարօրությանը ծառայեցնելու բարի կամքը:

Այս վճռորոշ պահին պոլսահայ համայնքի յուրաքանչյուր անդամից ակնկալում եմ առավել զսպվածություն և արժանապատիվ կեցվածք: Հույս եմ հայտնում, որ գոնե հոգևոր լուրջ մարմնի ընտրություններին թույլ չենք տա, որ պառակտվածության, անմիաբանության, կարճատեսության դրսևորումներ ի հայտ գան:

Աղոթում եմ և մաղթում, որ Բարձրյալը խաղաղության ու սիրո մեջ պահի ամենքիս:

*- Ամե՛ն: Աստված օգնական:*

***Զրույցը վարեց Խորեն ԳԱՍՊԱՐՅԱՆԸ***

5➲

ունեցա, ժողովուրդը հարցումներ տվավ, պատասխանեցի: Եվ պետք է ըսեմ, որ այս ընտրությունը կուսակցական ընտրության պայքար մը չէ: Մրցում մըն է, որ կշահիս կամ կկորսնցնես:

*- Ինչո՞վ նման չէ կուսակցական ընտրության:*

- Կուսակցական ընտրությունը այնպիսին է, որ խոստումներ կտրվի ժողովուրդին՝ այս պիտի ընեմ, այն պիտի ընեմ, թեև անոնց երկու երրորդը չեն իրականանար, սակայն այնպիսի պայքար կտարվի, մեկը մյուսին կնվաստացնե: Մեր եկեղեցական մրցումին մեջը այսպիսի բաներ գոյություն չունին և պետք չէ ըլլան: Ադիկա պատիվ կբերե ո՛չ եկեղեցիին, ո՛չ եկեղեցականության, ո՛չ ալ ժողովրդի խաղաղության: Հետևաբար պետք է հանդարտ, ներդաշնակ պայմաններու մեջ ընտրություն մը կատարվի: Ժողովուրդը մոտեն ճանչնա անձերը և ադոր համապատասխան իր կարծիքը հայտնե:

*- 10 օրը բավարա՞ր էր ընտրողներին Ձեր ծրագրերին ծանոթացնելու առումով:*

- Եթե ուզեի ամիս մը մնալ, կմնայի: 10 օրը բավարար չէ, անշուշտ: Նորեն երթալու կարելիություն մը կա, այսինքն արգելք մը չիկա որևէ մեկու կողմեն: Հետևաբար եթե ժամանակը, կարելությունը ունենամ տրամադրել, պիտի երթամ նորեն այն անձերուն կամ այն խումբերուն հետ տեսնվելու, որոնց չկրցա հանդիպիլ:

*- Ձեր կարծիքով, բավարար ճանաչո՞ւմ եք պոլսահայ համայնքը:*

- Որքան նախկին փործառությունս (30-35 տարի առաջ) ունիմ, այդ չափով կճանչնամ, բայց անշուշտ համայնքը, մտածելակերպն ալ փոխվեցավ: Կառավարության կողմեն ալ այդպես է: Բայց ինչ հարցեր որ կան այնտեղ, անոնց հետևեցա թերթեր կամ հեռուստացույցի հայտագիրներու միջոցավ: Այնպես որ տեղյակ եմ ինչ հարցեր կան:

*- Ո՞րն է պոլսահայության գլխավոր մարտահրավերն այսօր:*

- Բավական տարբեր են: Առաջնային՝ պետք է աշխատություն տարվի նախ պատրիարքությունը իրավական անձ դարձնելու: Որովհետև այդ կարելիությունը, որ ուներ ժամանակին, վերցվեցավ 1960-ին: Հիմա ադիկա աշխատանք մըն է, որ կրնա երկար ժամանակ առնել:

*- Մեսրոպ սրբազանը զբաղվե՞լ է այդ աշխատանքով:*

- Այո, փորձել էր, բայց տեղ մը չէր հասած, արդյունք մը չէր տված:

*- Ինչո՞ւ:*

- Ժամանակ ալ չունեցավ այդ աշխատանքը տանելու: 10 տարիներ միայն կըրցավ պաշտոնավարել: Գիտեմ, որ ծրագիր մը կպատրաստեր, բայց թե ադիկա կառավարության հանձնե՞ց, բանակցություններ տարա՞վ, ադկե տեղյակ չեմ: Բայց ժողովուրդին ցանկությունը կա մեջտեղը, որ ադիկա անպայման կուզեն իրականանա:

*- Դուք կարո՞ղ եք այն իրականացնել:*

- Չեմ գիտեր, ադիկա կառավարութենեն կախում ունի: Կարող եմ, եթե այստեղի պայմաններն ըլլան: Բայց այդտեղի քաղաքական պայմանները դյուրալի են կամ ոչ, ադիկա պիտի տեսնենք: Պետությունը պատրիարքը կճանչնա իբրև պաշտոնական անձ և համայնքի պաշտոնական ներկայացուցիչը, հետևաբար թե՛ աշխարհիկ, թե՛ կրոնական պարտականությունները պատրիարքի վրա կկենտրոնանան, հակառակ որ իրավական, օրինական պայմաններն ալ թույլ չեն տար, որ պատրիարքը միջամտություններ կատարե այդ բոլոր աշխարհիկ աշխատանքներուն: Օրինակի համար, դպրոցներու հարցեր կան, որոնց պատրիարքը պաշտոնապես ուղղակի միջամուխ չի կրնար ըլլալ, որովհետև դըպրոցներու կանոնադրությունները, հոգաբարձությունները առանձին միավորներ են: Մյուս կողմեն ալ ուրիշ մարմին մը չիկա հակակշռելու, հետևաբար այս երկու խնդիրները իրարմե զանազանելու, զատելու և յուրաքանչյուրին համապատասխան կանոնադրություններ մեջտեղ բերելու աշխատանք մը պետք է անպայման տարվի: Ասիկա անհրաժեշտություն մը կտեսնվի: Հետո դպրոցի, ուսուցիչներու մակարդակի հարցեր կան, ասոնք կարելի է լուծել դյուրությամբ, երբ որ համապատասխան անձերը կգտնեք, դաստիարակչական աշխատանք կտանիք, համապատասխան կազմակերպություն ալ գոյություն ունի, օրինակ ուսուցչաց միություն մը կա, որ կարելի է կուրսեր կազմակերպել, նաև Հայաստանի հետ հարաբերություն ունենալով այդտեղի կրթական միջոցներեն օգտվիլ, թե՛ դասագիրքերու, թե՛ ուսուցիչներու կողմե՝ փոխանակություններ ընելով:

*- Ասել է, թե առաջնային մարտահրավերը կրթական ոլորտը բարեկարգելն է:*

- Անշուշտ: Որովհետև լեզուն հետզհետե կորսվելու վրա է, լեզուն հոս ալ կկորսվի, բայց հոս դպրոց չիկա, հոն դպրոցները գոյություն ունին, բայց դպրոցներուն մեջ հնարավորությունը չստեղծվիր՝ ուսուցիչներն ալ լավ հայերեն չեն գիտեր, ադ ալ կա:

Հետո կալվածքներու հարցեր կան, անոնք պիտի արժևորվին: Բավական երկար տարիներ կառավարությունը բռնագրավեց կալվածքները, ուրեմն հիմա նոր օրենքներու համաձայն կամաց-կամաց ետ տրվիլ սկսան: Ետ տրվելեն հետո պետք է եկեղեցական վարչություններու կողմե արժևորվին, նախ պետք է նորոգվին, համապատասխան վարձու մարդիկ գտնենք և անոնց տրվի, հետո այդ կալվածքներեն գալիք եկամուտները պետք է հավասար և ներդաշնակ բաժնվին այդ կազմակերպություններուն ի նպաստ:

*- Սրբազան հայր, Ձեզ պոլսահայությունը ճանաչո՞ւմ է:*

- Չեմ գիտեր: Ադիկա ճանչնալ այնպիսի հանգամանք մըն է, երբ որ եկեղեցիով կհետաքրքրվիք, այն ատեն Ձեր եկեղեցականները կճանչնաք: Բայց եթե եկեղեցիով չեք զբաղվիր, չեք ճանչնար: Հավատք ալ չունիք եթե, որքան ծանոթացնենք մենք մեզի, նորեն անտարբեր եք: Այնպես որ շատ պայմանական է ճանչնալը: Իմ աշխատանքներս ամեն տեղ՝ ասդին, անդին, ամեն տեղ հայտարարված, գրված են, հետաքրքրվողները եթե կարդան, կրնան գաղափար մը կազմել: Ադիկա անշուշտ կրնա ոչ անպայման դրական, ժխտական ալ տպավորվիլ, բայց համենայդեպս մեջտեղն է գործը:

*- Պոլսում Ձեր հանդիպումների ժամանակ ամենաշատը ո՞ր հարց էին ուղղում:*

- «Ի՞նչ կմտածեք ընել պատրիարք ըլլալե հետո»: Այն մարտահրավերները, որոնց մասին խոսեցա: Առաջին հերթին գործս ադ պիտի ըլլա, որ անոնց վրա կենտրոնանք: Ամեն տեղ, անշուշտ հավատքի նահանջ մը տեսա: Հայերը եկեղեցի կերթան՝ առանց հավատք ունենալու: Կերթան՝ իբրև հայկական վայր, ուր իրարու պիտի հանդիպին:

*- Ինչպե՞ս պիտի դարձի բերեք նրանց:*

- Շատ զորավոր քարոզչություններու միջոցավ: Եկեղեցականներ կան, անոնց պիտի աշխատանքի լծել և քարոզչությունն այնպես ընել, որպեսզի ժողովուրդին հավատքը վերականգնվի:

*- Համեմատելով գերմանահայ համայնքին, կարելի՞ է արձանագրել, թե այստեղ ավելի շատ է թիվն այն մարդկանց, ովքեր հավատքով են եկեղեցի գալիս:*

- Գերմանիա խնդիրը հավատքի հարց չէ միայն, այստեղ հեռավորություններն ալ տարբեր են. հիմա եկեղեցի գալու համար 30, 40, երբեմն 50, 100 կմ պիտի կտրեք, իսկ Պոլսո մեջ ամեն թաղի մեջ արդեն եկեղեցի կա՝ 30-35 հատ: Հայերն ալ ադ թաղերուն մեջ արդեն կբնակին: Այնպես որ այնտեղ ադ հեռավորությունները չիկան, հետևաբար եկեղեցիներու հաճախելիությունն ավելի շատ է, բայց հավատքի խնդիրը տկար է, պետք է ադիկա շեշտենք: Ամեն տեղ ադպես է, հոս ալ ադպես է: Հոն թեև հավատացյալներու թիվը բավական մեծ է, օրինակ գիշեր մը թաղամասի եկեղեցիին մեջ ժամը ութուկես-իննեն հետո 350 հոգի հավաքված էր կրոնական քարոզ մը մտիկ ընելու համար: Կարելի չէ Գերմանիո մեջ ադ թիվը հավաքել: Շաբթվա մեջ մանավանդ ադ ժամերուն եթե անանկ կոչ մը ընեք, ժողովուրդը Ձեր վրա կրնա խնդալ:

*- Սրբազան հայր, հավատքի պակասը պայմանավորված չէ՞ արդյոք ուսյալ, կրթյալ եկեղեցականների պակասով նաև:*

- Կրնա ըլլալ: Անհրաժեշտ է, որ այդ պատրաստությունն ունենան, բայց եթե համեմատենք Գերմանիո հետ, կտեսնենք, թե բոլորովին ուրիշ տեղ է խնդիրը: Հիմա հոս մեծ թիվով գերմանացի եկեղեցականներ կան՝ բողոքական, կաթոլիկ, մեծամասնությունը աստվածաբանության դոկտորայի տիտղոս ունին, իրենց եկեղեցիները ի՞նչ վիճակի մեջ են, նույնիսկ եկեղեցիները կծախրեն, հետևաբար եկեղեցականներու տկար պատրաստությունը չէ, որ դեր կխաղա, այլ աշխարհի տարբեր պայմանները: Պետական տարբեր շարժումներ կան, հեռուստացույց կա, աս կա, ան կա, այնպես որ այդ բոլորը դեր կխաղան, որ ժողովուրդին ուշադրությունը տարբեր տեղ կենտրոնանա: Մնաց որ մերին ժողովուրդն ալ իր զավակներն անպայման դեպի եկեղեցականություն քաջալերողը չէ: Ընդհակառակը՝ հակառակ կեցող և արգիլող դիրք մը բռնած է այսօր. ցավալի է, որովհետև ան ալ թե՛ հավատքի պակասեն, թե՛ անգիտակցության: Կկարծեն, թե եկեղեցական ըլլա, դեպի մահ կերթա: 40-45 տարվա մեջ հաստատեր եմ, թե ընտանիք մը իր տղա զավակը ավելի դյուրին պատերազմ կղրկե, քան եկեղեցական ըլլալու: Դժբախտություն է ասիկա, և ասիկա ժողովուրդի անգիտակցության հետևանքն է:

*- Նո՞ւյնն է պարագան նաև Պոլսում:*

- Ամեն տեղ: Որովհետև այսօր բացի Հայաստանեն ուրիշ տեղ թեկնածու չիկա: Հայաստան ալ թեկնածուների բավական թիվ կա հիմակուհիմա, ան ալ տնտեսական պայմաններու հետ կապված է: Հայաստանի ժողովուրդին մեծ մասի տնտեսական վիճակը վատ է, ուրեմն վանք կղրկեն, որպեսզի իրենց զավակը տեղ մը հասնի, կարիեր մը ընե: Քանի մը զավակներուն մեջեն գոնե մեկ հատը փրկվի: Քանի-քանիներ եկեղեցական ըլլալեն վերջն ալ հրաժարեցան:

*- Դուք ինչպե՞ս ընտրեցիք այս ուղին:*

- Մեր ժամանակը տարբեր էր, իմ հորս, մորս հավատքի փոխանցումը ինծի եղավ: Երկուքն ալ Թուրքիայեն են, մեկն Անկարայեն, մյուսը Անկարայի մերձակա տեղեն մը:

*- Ցեղասպանության ողբերգությանն ականատե՞ս են եղել:*

- Անշուշտ, ապրած են ամենն ալ: Ամբողջ ընտանիքը ջարդված է, պատահմամբ իրենք ազատեր են: Մորս հավատքը և եկեղեցի զիս տանելու՝ եկեղեցի երթալով հայկական շրջանակի մեջ մնալու գիտակցությունը, ինչ որ այսօր եվրոպաբնակ մեր ժողովուրդի մոտ չիկա, ազդեցություն ձգած է:

*- Սրբազան հայր, եկեղեցական, աստվածա-*

➲7

6➲

*բանական աշխատություններ ունե՞ք հրատարակված:*

- Ոչ: Ուրիշ բաներ ունիմ՝ թարգմանություններ: Քեմալ Յալչընի երկու գրքերը թարգմանեցի՝ «Սիրտս քեզմով կխայտա» և «Սարի գելին», որոնք ավելի հայկական հարցին հետ առնչություն ունին, կազմած եմ անձնանուններու բառարան, հոդվածներ ունիմ՝ հրապարակախոսություն, մեր եկեղեցվո պատմության մասին տեղեկատվական բնույթի հրապարակումներ, որ տպագրված են Մարսելլի «Արմենիա», Պոլսո «Մարմարա» թերթերուն մեջ:

*- Սրբազան, հայտնի՞ է, թե Կ.Պոլսո ընտրություններին քանիսը քվե տալու իրավունք ունեն:*

- 18 տարեկանեն վեր ամեն մարդ կրնա մասնակցիլ: Վերջին անգամ 16 հազար հոգի մասնակցեցավ, կրնա նաև 50 հազար մասնակցիլ, եթե անտարբեր չըլլան: Կըսեն 70 հազար հայ կա, անոր 50 հազարը եթե 18 տարեկանը լրացուցած է, ուրեմն կրնան ընտրել:

*- Քանի՞ հոգի ունկնդիր եղան Ձեր քարոզներին:*

- Չեմ գիտեր: Տեղ մը 500, տեղ մը 700, տեղ մը 400, այդպես:

*- Սրբազան հայր, ինչո՞ւ որոշեցիք դնել Ձեր թեկնածությունը: Որովհետև Ձեր սիրելի Պոլի՞սն է , թե՞ պաշտոնական դիրքի առաջընթաց նկատելով:*

- Ոչ, ոչ: Ուղղակի բարեկամներու շատ ճնշում կար, որ ես ալ դնեմ (թեկնածությունս), քանի որ նախորդ երկու անգամ չէի դրած՝ 1990 և 1998 թվականներուն, նորեն թեկնածու կրնայի ըլլալ, չդրի, այս անգամ ուզեցին, որ անպայման դնեմ և այդ փափագին ընդառաջելու համար էր, չէ նե այդպես մասնավոր ցանկություն մը չիկար:

*- Ցուրտ Գերմանիայում Ձեզ ավելի լա՞վ եք զգում:*

- Ցուրտ Գերմանիան երբեմն ավելի ազատ է, քան պատրիարքարանի մեջ, ուր պիտի բանտարկվէ, չէ՞, ազատություն չունինք: Հոս կելլաք ձյունագնդակ կխաղաք պարտեզը, չէ՞:

*- Եթե Դուք ընտրվեք, ո՞ւմ եք տեսնում Գերմանահայոց առաջնորդի պաշտոնում:*

- Եկեղեցականներ կան, Վեհափառը կրնա ուրիշ մեկը թելադրել, բայց աստեղի եղածներուն մեջ հայր Սերովբեն ամենեն հարմարն է, իմ կարծիքով, ժողովուրդն ի վերջո իր ճանչածը պիտ նախընտրե: Ինծմե վերջը կրնա հայր Սերովբեն այս պաշտոնը կատարել: Ինքը ամենեն փորձառուն է հոս եղողներուն, հետո մոտեն ճանչցավ ժողովուրդը, մտածելակերպը, լեզուն, առավելությունները շատ են, հետո 15 տարի է իմ հետս է, ոչ մեկ անգամ ո՛չ ինծի, ո՛չ համայնքին դժգոհություն չէ պատճառած:

*- Գերմանահայությունը Ձեր առաջնորդությամբ ինչպիսի՞ մարտահրավերներ դիմակայեց: Ո՞րն է Ձեր ամենակարևոր ձեռքբերումը:*

- Բացի պզտիկ մշակութային միություններեն ոչ մեկ բան գոյություն ուներ: Ինչ որ կա առաջնորդության շուրջ, իմ օրոք եղավ, անշուշտ, իմ աշխատակիցներու և իմ միջոցավ: 15 եկեղեցական համայնք մեջտեղ եկավ, այս եկեղեցական համայնքներն իրենց կանոնադրություններն ունեցան, բոլորը միաձև, և կապվեցան առաջնորդության՝ կենտրոնի մը: Եկեղեցիներն իրենց կրոնականներն ունեցան, ոչ բոլորն անշուշտ, որովհետև դրամ ալ չիկա, բայց այսօր կանոնավոր կերպով եկեղեցականներու ամսականները կվճարվին, կանոնավոր կերպով երթևեկություն կկատարվի: Միջեկեղեցական շարժումին մեջ բավական անուն շահեցավ Հայ եկեղեցին և այս ձևով թե՛ մեր կրոնքը, թե՛ հայ եկեղեցվո, հայ ժողովրդի պատմությունը, ցեղասպանությունը, այս բոլորը օտար կազմակերպություններու մոտ հայտնեց, բացատրեց, հետո գրքույկներ տպվեցան կրոնական բովանդակությամբ, մշակույթի վերաբերյալ: Մշակույթի հանձնախումբ կազմվեցավ, որ բավական երկար տարիներ իր գործունեությունը կտանի թե՛ հայերու, թե՛ գերմանացիներու համար:

*- Սրբազան հայր, գերմանահայության մի ստվար հատված միշտ դժգոհում է, որ հայկական եկեղեցում հայերենից հետո Դուք թուրքերեն եք քարոզում:*

- Այո: Երբեմն ալ՝ գերմաներեն: Որովհետև մարդիկ կան, որ կգանգատին, որ չեն հասկնար՝ ինչո՞ւ միայն հայերեն կխոսինք:

*- Պոլսում Դուք կարևորեցիք դպրոցաշինությունը, այստեղ էլ կարելի է ասել՝ եկեղեցին պիտի նպաստի, որ հայերեն խոսեն:*

- Այո, բայց հոս կարելիություն չունիս ադիկա իրականացնել՝ համապատասխան ուսուցիչ պիտի ունենաս, համապատասխան վայր մը պիտի ունենաս, համապատասխան աշակերտ պիտի ունենաս: Նայեցեք՝ քանի՞ աշակերտ կա՝ եղած-չեղած 10-20 աշակերտի շուրջ կդառնա ամեն տեղ, անոնք ալ 2 ամիս կուգան, երրորդ ամիսը բացակա են: Անանկ որ հոս՝ դպրոց չեղած տեղը, կարելիություն չիկա: Հնարավորություններով պետք է խոսին, անհնարին բաներու մասին երազներ տեսնելը ավելորդ ժամավաճառություն է: Հիմա հոս ժողովուրդ մը կա, որ դժգոհ է՝ չեն հասկնար քարոզ ըսված ատենը, պետք է եկեղեցիին մեջ կրոնական սնունդ մը առնելով երթա մարդ, եթե ադ չառներ, ի՞նչ իմաստ ունի եկեղեցի գալ: Ավետարանի խոսքը, Քրիստոսի պատգամը պիտի իմանա, անոր հաղորդակից դառնա և տուն վերադառնա: Եթե անիկա չառած տուն երթա, ի՞նչ:

*- Ուրեմն հայ եկեղեցին նահանջո՞ւմ է լեզվով:*

- Քննադատության պատրաստակամություն ունեցող մարդիկը քննադատելու համար կքննադատեն, բան մը ըսած ըլլալու համար՝ իբրև թե շատ մեծ հայրենասեր են: Մշակույթի օրեր կընենք, այդ քննադատողներեն քանի՞ հոգի արդյոք ներկա են, եթե այդքան հայասեր են, իրենց պատմությունը, ժողովուրդը կսիրեն... հետևաբար ասոնք բոլորը խախուտ տեսակետներ են: Մեր ժողովուրդի հոգեբանությունը գիտեմ՝ հավաքականության մեջ մեկը կելլա, քեզի դիտողություն մը կընե, ինզինքը ցույց տալու համար, թե շատ կարևոր անձնավորություն է, մինչդեռ իրականության մեջ ոչ մեկ բան չի ներկայացներ. այդպիսի պարապություններ լեցուն են մեր շուրջ: Այդ պատճառավ ալ արդեն մեր մշակույթի և կամ եկեղեցական աշխատանքները տեղ չեն հասած: Եթե լուրջ ըլլային իրենք, պիտի շրջապատեին եկեղեցվո վարչությունը, մեր շուրջը պիտի հավաքվեին, իրենց մասնակցությունը պիտի բերեին, ո՞ւր են:

*- Իսկ Պոլսում քարոզի վերջում հնարավո՞ր է, որ նորից թուրքերենին դիմեք:*

- *Այո, երկու տեղ սրահներուն մեջ* թուրքերեն պահանջեցին, հայերեն սկսա, «թրքե՛րեն խոսիր» ըսին: Ադոր համար պետք է դպրոցները ուժեղացվին: Թուրքերեն ըլլալու պարագային, գիտեք, մարդիկ քիչ մը տարօրինակ մոտեցում ունին: Ֆրանսայի մեջ մեկ հոգի հայերեն չի խոսիր, եկեղեցիներու մեջ հայերեն հազիվ աղոթքները կկարդացվին, առօրյա խոսակցությունը ֆրանսերեն է, տունին մեջ ֆրանսերեն է, փողոց կելլաք ֆրանսերեն է, Ամերիկա՝ անգլերեն, նույնիսկ պատարագը սկսան անգլերեն ընել, այսինքն՝ պարագան, համեմատությունները նույնն են: Ցեղասպանության հարց կա ըսելով թուրքերեն եթե իմանաք, ո՞ւ, մեծ աղետ մը կգործվի, կկարծվի: Ո՛չ, անանկ բան մը չիկա: Ժամանակի բերած պայմաններն այսպես են: Այսօր զարմանալի է ինծի պարագան օրինակի համար՝ հայ մը թուրքի հետ կամուսնանա Թուրքիա, հոս ալ:

*- Հայ եկեղեցին ընդունո՞ւմ է այդ միությունը:*

- Մկրտելու պայմանավ միայն ընդունիլ կարելի է: Եթե ենթական պատրաստ է կրոնքը ընդունելու:

*- Գերմանիայում քանի՞ այդպիսի դեպք գիտեք:*

- 4-5 հոգի եղած է:

*- Դուք սա ձեռքբերո՞ւմ եք համարում՝ թե թուրքի հետ ամուսնանալով նրան դավանափոխ ենք անում, ավելացնում Հայ եկեղեցու հետևորդների թիվը, թե՞ կորուստ:*

- Սիրելի քույրս, ասիկա ո՛չ կորուստ է, ո՛չ շահ: Ասիկա ենթականերու ցանկությունն է, որուն միջամտելու իրավունք չունիք: Իմ սեփական կյանքս է ասիկա, Դուք մի՛ խառնվիք: Ծնողներուն չեն ձգեր որ խառնվին, ի՞նչ կրնաք ընել: Դուք նստեցեք, հաշիվ ըրեք՝ կորուստ է, չէ նե շահ է: Շա՞հ է Հայաստանեն մարդիկ դուրս կուգան հարյուրներով, հազարներով, թուրք վարչապետը հայտարարեց՝ 100 հազարին չափ մարդ եկեր է Հայաստանեն:

*- Էրդողանը թվերը չափազանցնո՞ւմ է, սխա՞լ է իր հայտարարությունը:*

- Գիտենք, որ ադտեղը այդքան թիվով մարդ կա, Հայաստանեն մարդիկ Թուրքիա կերթան արձակուրդ ընելու համար, հիմա շա՞հ է, չէ՞ նե կորուստ է: Այսօրվա պայմանները, երթևեկը, տուրիզմը, չեմ գիտեմ ինչը մեկ անկյունեն չպետք է դիտել, տարբեր դիմեզիոններով, համեմատություններով պետք է վերլուծել, այն ատենը պիտի ճիշտ կարծիքին հասնիք: Ես 20 տարի ապրեցա Ֆրանսա, հոն պաշտոնավարեցի, եթե ամեն ամիս միջին հաշվով 10 հատ պսակ ընեի, 9 հատը օտար ամուսնություն էր՝ ամեն տեսակը կար՝ ֆրանսացին, սպանացին, ալջերիացին, սևամորթը, դեղնամորթը: Հիմա սա ի՞նչ է՝ կորո՞ւստ է, չէ՞ նե շահ է:

*- Խառնամուսնությունների տեսակետից Գերմանիայում վիճակն ինչպե՞ս է:*

- Հիմակուհիմա ավելի լավ է, բայց հոս ալ սկսավ: Նայեցեք շուրջը՝ կտեսնեք որ մեր երիտասարդներու երկու-երրորդին ընկերը կամ ընկերուհին օտար է: Ցավալի է, բայց այսպես է:

*- Սրբազա՛ն հայր, ի՞նչ կոչ կուղղեք պոլսահայության:*

- Կմաղթեմ, որ լավ, ներդաշնակ ընտրության պայմաններ ստեղծվին, կռվի, վեճվիճաբանության առիթ չտրվի, արդեն մեր եկեղեցին բավական դարեր միշտ վերելքներ ունեցած է, բայց վիրավորանքներ ալ ունեցած է, այդ վերքերը չստանա, եկեղեցին և եկեղեցականությունը բարձր պահվին ժողովրդին կողմե և թեկնածուներուն մասին զգույշ թող ըլլան, ոչ մեկ անպատշաճ խոսքով չնվաստացնեն, որովհետև ադիկա անձը չէ, այլ եկեղեցին ու եկեղեցականությունը նվաստացուցած կըլլան, և կմաղթեմ, որ ժողովրդի մեծ մասը մասնակցի ընտրություններուն և մոտեն հետևի յուրաքանչյուր թեկնածուի խոսածներուն, արարքներուն, հետո լավ ուսումնասիրեն և ըստ այնմ իրենց կարծիքին համապատասխան ընտրություն ըլլա:

***Անահիտ ՀՈՎՍԵՓՅԱՆ, Քյոլն, Գերմանիա***

*Արքաների ընտրովի համակարգ*

# ՀԱՅՈՑ ԱՐՔԱՆԵՐ




**Բոլորս ենք պնդում, որ հայ ժողովուրդը հազարամյակների պատմություն ունի, երբեմն հպարտանում ենք ու մի քիչ էլ գլուխ գովում, թե՝ «երբ մենք պետություն ունեինք՝ ուրիշ ազգերը ծառից ծառ էին թռչում»: Սակայն, հարկ եղած դեպքում քչերն են կարողանում ասածը հիմնավորող մեկ-երկու փաստ բերել, հայ ժողովրդի պատմությունից մի քանի դրվագ հիշել...**

**Այսուհետեւ, մեր ընթերցողին կներկայացնենք նոր խորագիր՝ «Հայոց արքաներ», որով կփորձենք՝ «Հայոց արքաների կերպարը շոշափելի դարձնել ընթերցողի գիտակցության մեջ, այսպիսով նաեւ Հայոց պետականության շարունակականության զգացողությունը ավելի ու ավելի շոշափելի դարձնել»: Ինքս պատմաբան չեմ, ավարտել եմ Երեւանի ամենասովորական դըպրոցներից մեկը (թիվ 166), ապա՝ ստացել ինժեներական կրթություն (Երեւանի ճարտարապետաշինարարական ինստիտուտ), հանգամանքների բերումով՝ զբաղվել լրագրողի աշխատանքով: Բարեբախտաբար, ընթերցանության համար ժամանակ (նաեւ՝ ցանկություն) գտնում եմ եւ ինձ համար պատիվ է ընթերցածս գրքերից «ծաղկաքաղ» անելն ու չնչին մեկնաբանություններով Հայոց արքաների պատմությունը մեր ընթերցողին ներկայացնելը: Հուսով եմ կստացվի:**

**Հայոց բարեպաշտ արքաները**

Մովսես Խորենացուց սկսած հայոց պատմագրության մեջ ընդունված է առաջին հայ արքա համարել Ուրարտուի գահակալ Արամին, ով կառավարել է մ.թ.ա. 860-840 թվականներին: Կարծես թե մեր առաջին թողարկումն էլ պետք է նրան նվիրված լիներ, սակայն մենք, հիմք ունենալով մեր ժամանակների լավագույն պատմաբաններից Արտակ Մովսիսյանի «Բարեպաշտ արքաների աշխարհակալությունը» արժեքավոր աշխատությունը, որոշեցինք մի 1500 տարի էլ հետ գնալ ու հասնել Կուտիների երկիրը: Սա, ըստ պատմաբանի հիմնավորումների, պատմական Մեծ Հայքի Կորճայք նահանգի Կորդուք գավառն է, որը համաձայն ասուրական սկզբնաղբյուրների, իր շուրջն էր համախմբել եւս 17 թագավորություններ եւ ներառում էր Հայկական լեռնաշխարհի մի զգալի մասը (քարտեզ 1): Կուտիների երկիրը կամ Կուտիումը Հայաստանի հնագույն անվանումներից է եւ նույնպիսի տեղ պիտի ունենա մեր պատմության մեջ, ինչպես օրինակ՝ Արատտան, Ուրարտուն, Բիայնան, Նաիրին:

Աստիճանաբար հզորանալով՝ Քրիստոսից առաջ 23-22-րդ դարերում Կուտիների երկիրը (Հայաստանը) հասնում է աշխարհակալության տարածքային հսկայական ընդգրկման՝ Հայկական լեռնաշ-




խարհի հյուսիսից մինչեւ Պարսից ծոց: Ցավոք, հայկական պատմական սկզբնաղբյուրներում սրա մասին ոչինչ չկա, փոխարենը՝ ընդհանուր պատկերացում կազմելու եւ Կուտիումի հակիրճ պատմությունը տալու համար բավարար են Ասորեստանի արքաների թողած հաղորդագրությունները:

Մեզանից մոտ 4500 տարի առաջ Միջագետքում գերիշխանության է գալիս Սարգոն Աքքադցին, ով գրավելով Առաջավոր Ասիայի մեծ մասը, ստեղծում է պատմությանը հայտնի առաջին բռնապետությունը: Նրան հաջորդում են Ռիմուշը, Մանիշտուշուն, Նարամ-Սուենը: Վերջինս, ինքն իրեն աստված հռչակելով, ճնշելով Շումերում ծագած ապստամբությունները (պիտի ենթադրել՝ անկախության համար մղվող) հասնում է մինչեւ Կուտիում (Հայաստան), սակայն ուղարկած երեք բանակներն էլ (120 հազար, 90 հազար եւ 60 հազար) գլխովին ջախջախվում են: Շումերական քրմերը, որ անկախության համար պայքարող ապստամբների առաջնորդներն էին, կուտի-հայերի օգնությանն են դիմում: Եվ օգնությունը չի ուշանում: Կուտիների առաջնորդ Էնդրիդավիզիրի գլխավորությամբ Միջագետքի կենտրոն են արշավում լեռնականները եւ սպանում ինքնակոչ «աստծունե»: Հայտնի է, որ դրանից հետո «Աշխարհի չորս կողմի թագավոր» տիտղոսը կրում է ոչ թե Աքադի հաջորդ գահակալ Շարկալիշարին, այլ մեր արքա Էնդրիդավիզիրը: Սա մոտավորապես Ք.ա 2200 թվականն էր: Այս դեպքերից հետո մոտ յոթանասուն տարի հայ-կուտիները Առաջավոր Ասիայի մեծ մասի վրա պահում էին իրենց գերիշխանությունը (քարտեզ 2): Կարեւոր է փաստել, որ կուտիները Աքադ մտան ոչ թե որպես նվաճող ու նոր բռնապետ, այլ ազատարարներ՝ բառի ամենաիսկական իմաստով: Այս փաստի օգտին են խոսում վկայությունները, որ մերոնք վերականգնում են շումերական ավանդական հոգեւոր կարգերը, բացում են ավագների խորհուրդը, ժողովրդական ժողովները, որոնք ընտրում էին իշխանավորին: Ուշադրություն դարձրինք չէ՞, ընտրում էին: Այդ ժամանակներին է վերագրվում «շումերական վերածնունդ» հասկացությունը: Հենց այդ դարում միջագետքի ժողովուրդները ապրեցին խաղաղ, գցվեցին նոր ջրանցքներ, կառուցվեցին տաճարներ: Ի դեպ, ուսումնասիրելով կուտի արքաների գահակալության տարեթվերը, պատմաբան Ա. Մովսիսյանը համոզված է, որ Կուտիների երկրում գործում էր արքաների ընտրովի համակարգ, փաստորեն ավելի վաղ՝ քան Հին Հունաստանում: Արքաները տարբեր ժամանակներում ընտրվել են 2, 3, 6 կամ 7 տարով: Բոլորից շատ՝ 15 տարի, գահակալել է Յարլագաբ անունով թագավորը: Շարունակենք: Կուտի-հայերը Աքադի, Շումերի, Էլամի, մի խոսքով՝ Միջագետքի կողմերում մնում են մոտ յոթանասուն տարի, այնուհետեւ՝ հեռանում իրենց երկիրը: Հավանաբար ժողովրդավարություն, հավասարություն, արդարություն հաստատելու առաքելությունն այլեւս ավարտված էր: Այսպիսի նախնիք ենք ունեցել, իսկ թե ինչո՞ւ փոխվեց հայը, ինչո՞ւ ենք այսօր տարակուսած ու զարմացած խոսում արդարադատության կամ արդար ընտրությունների մասին, հավանաբար կիմանանք մեր հաջորդ արքաների կյանքն ու այն ժամանակների Հայաստանի պատմությունն ուսումնասիրելով:

***Վարդան ՕՆԱՆՅԱՆ***

---

**ՔԱՂԱՔԱԿԱՆ ԵՐԳԻԾԱՆՔ**

# ՏԻԵԶԵՐԱԺՈՂՈՎ

(Եղել է կամ կլինի)

Տիեզերական ժողով էր գումարվում: Օրակարգում քննարկվում էր մեկ հարց՝ «Տարածքային ամբողջականությո՞ւնն է կարևոր, թե՞ ազգերի ինքնորոշման իրավունքը»: Տիեզերաժողովին ներկա էին գերտերությունների առաջին դեմքերը: Իտալիայի վարչապետ Սիլվիո Բեռլուսկոնին, վերջին ծեծուջարդից հետո քիթբերանը վիրակապերի մեջ, կողքից բգելով Սարկոզիին, առաջինն ինքը խոսեց.

- Իմ կարծիքով՝ տարածքային ամբողջականությունն ավելի կարևոր է, Հռոմեական կայսրության մեր տարածքներից մեզ ի՞նչ է մնացել, ժամանակն է մեր տարածքները հետ վերադարձնելու, ճիշտ չէ՞ մ ասում, Սարկոզի, դու էլ Ֆրանսիական կայսրության հողերի հարցը դիր: Սարկոզին ոտքի կանգնեց, հատուկ ցուցադրելով իր բարձրակրունկ կոշիկները, խորամանկ ժպիտը դեմքին, վրա բերեց.

- Սա միակ դեպքն է, որ ես համաձայն եմ Բեռլուսկոնիի հետ:

Մեդվեդևը, որին հաճախ սխալվելով Պուտին էին անվանում, ոտքի չկանգնեց, սակայն նստած տեղից ռեպլիկի կարգով միջամտեց.

- Բարի լինեիք՝ ժամանակին պահպանեիք ձեր ամբողջականությունը: Մենք գրեթե

➲17

*ՄԱՐԴԿԱՅԻՆ ՌԵՍՈՒՐՍՆԵՐԻ ԿՈՐՈՒՍՏ*

# ԾԱՂԿՈՒՄ Է ՄԻԱՅՆ ՈՒՂԵՂՆԵՐԻ «ԱՐՏԱՀԱՆՈՒՄԸ»



Երկրի տնտեսական անվտանգությունը ազգային անվտանգության կարևորագույն բաղադրիչներից է: Հայաստանի տիպի պետության համար, երբ առկա են ռեսուրսների սահմանափակ հնարավորություններ, առաջնային խնդիր է դառնում արտադրության գործոնների (մարդ, հող, կապիտալ և ձեռնարկատիրական կարողություն) ճիշտ կառավարման միջոցով արտադրողականության բարձր մակարդակի ապահովումը տնտեսության բոլոր ճյուղերում:

Հայաստանի տնտեսական զարգացման այլ տարբերակ չկա, քան ներմուծման փոխարինումը և արտահանմանն ուղղված քաղաքականությունը: Ցավոք, մեզանում դեռևս հակառակ միտումներն են: Նախորդ տարվա պաշտոնական տվյալներով ներմուծումը գերազանցում է արտահանմանը մոտ 5 անգամ: Պարադոքսն այն է, որ մեզանում հակառակ պատկերն է միայն ուղեղների արտահանման գծով: Անկում է գրանցված արդյունաբերական արտադրանքի ոլորտում: Իսկ դա նշանակում է, որ մենք առավելապես սպառողական, այլ ոչ թե արտադրող տնտեսական համակարգ ունենք: Եթե այս վիճակը պահպանվի, ապա մի քանի տարի անց Հայաստանը կարող է ամբողջությամբ վերածվել «բանանային երկրի», որը գոյատևում է միայն դրսի վարկերի, գրանտների, հումանիտար օգնությունների, ազգականների ու բարեկամների օգնությունների և սփյուռքահայերի միանգամյա կարոտախտային այցելությունների հաշվին:

Կարծում եմ, որ նման հեռանկարի որևէ բանական մարդ չի կարող համակերպվել: Հետևաբար, օրակարգային հարց է դառնում ՀՀ տնտեսական համակարգի վերակառուցումը, ինչպես նաև պետական այնպիսի քաղաքականության մշակումը, որը Հայաստանը կդարձնի արտադրող և արտահանող պետություն:

Նշված խնդրի լուծման ճանապարհներից մեկը ինովացիոն տնտեսության կառուցման խթանիչների ներդրումն է: Նոր տեխնոլոգիաներ, ժամանակակից մենեջմենթ և հայրենասեր չինովնիկություն, որը դրսևորվում է հայրենական արտադրության աջակցությամբ` ահա՛ հաջողության այն բանաձևը, որի օգնությամբ շատ երկրներ դարձել են միջազգային կամ գոնե տարածաշրջանի մակարդակով տնտեսապես հզոր պետություններ:

Ինովացիոն տնտեսությունը գիտելիքահենք արտադրությունների և մենեջմենթի միասնական համակարգն է, որտեղ ամենահիմնական գործոնը դառնում է մարդը: Այստեղ ավելորդ չէ նշել, որ այսօր Հայաստանն ունի ոչ միայն և ոչ այնքան աշխատատեղերի խնդիր, որքան որակյալ աշխատուժի, որի պակասը զգացվում է բիզնեսի բոլոր մակարդակներում, այնինչ նախկինում մենք որպես առավելություն էինք դիտարկում մեզ մոտ առկա որակյալ կադրերի բանակը: Ասվածը հատկապես վերաբերում էր գիտության ասպարեզին:

Խորհրդային կարգերը մեզ թողել էին լուրջ գիտական ժառանգություն: Հայ գիտնականների աշխատությունները անբաժանելի մասն էին կազմում համաշխարհային գիտական ներուժի, թվարկեմ միայն մի քանի անուն` Վիկտոր Համբարձումյան, Գրիգոր Գյուրզադյան, Սերգեյ Մերգելյան, Արմենակ Մնջոյան, Արտեմ և Իսակ Ալիխանյաններ` այս թվարկումը դեռ երկար կարելի է շարունակել:

Հիմա լրիվ այլ պատկեր է: Խորհրդային միության փլուզումից հետո մեծ թափ առած արտագաղթն իր հետ տարավ նաև հազարավոր գիտաշխատողներ, գիտության մեր հսկաների ստեղծած գիտահետազոտական ինստիտուտները և այլ գիտական օջախներ ամայացան, քանդվեցին իսկ որոշները թալանվեցին: Սկսվեց «ուղեղների արտահոսքը»:

Ռուսաստանի Դաշնությունը և Արևմուտքը, ի տարբերություն մեր այդ տարիների իշխանության, չափազանց բարձր գնահատելով հայ գիտնականի միտքն ու նրա ներուժը, մեր գիտնականների համար ստեղծեցին աշխատանքային բարեկեցիկ պայմաններ, ինչը չարվեց Հայրենիքում, և հայ գիտական միտքը սկսեց ծառայել օտարին: Այսօր ողջ աշխարհում` Եվրոպայում, ԱՄՆ-ում, Կանադայում և Ռուսաստանում արդեն գերակայող է դարձել այն միտումը, որ իրենց երկրներ ներգաղթելու հնարավորություն են տալիս առավելապես, բարձրագույն կրթությամբ, որևէ ասպարեզում մասնագիտացած, երիտասարդ ընտանիքներին: Այսօր Հայաստանում այն աստիճան է սրվել արհեստավարժ կադրերի դեֆիցիտը, որ հայրենական արտադրությունը կանգնած է կադրային աղետի եզրին: Դժվար է գտնել ոչ միայն արհեստավարժ հաշվապահներ, ֆինանսիստներ, դիզայներներ, այլև արհեստավարժ արհեստավորներ (եռակցողներ, փականագործներ, հյուսներ և այլն): Առանց առաջավոր գիտական ներուժի մենք ազգովին կնմանվենք թաթարմոնղոլական քոչվոր ցեղերին: Միգուցե ազգովին սկսենք ոչխար պահել, սակայն նույնիսկ արհեստավարժ և աշխատասեր ոչխարապահներ չունենք: Այսօր այդ գործը փայլուն կատարում են եզդիները, ինչի շնորհիվ հարգանքի արժանի են: Այս թեմային կանդրադառնանք հետագայում: Հայրենական խոշոր արտադրողները համակարգաստեղծ հիմնարկներ են և ոչ միայն աշխատատեղ են ստեղծում, այլև ստեղծում ու պահպանում են աշխատանքային դպրոցը: Հայրենական արտադրողների շնորհիվ է, որ երկրի լավագույն մասնագետների մի մասը դեռ շարունակում է ապրել և աշխատել հայրենի հողում: Ի տարբերություն հայրենական արտադրողների, ներմուծողները գրեթե լումա չունեն ուղեղների արտահոսքը կանխելու գործում և նույնիսկ նպաստում են դրան: Կան դեպքեր, երբ Հայաստան է ներմուծվում այն ընկերությունների արտադրանքը, որոնց լավագույն մասնագետները Հայաստանից արտագաղթած մեր հայրենակիցներն են:

Ճիշտ է, գիտությունների թեկնածուների և դոկտորների քանակի առումով միգուցե մենք այսօր ունենք ավելի մեծ թիվ, քան 90-ականների սկզբին էր, բայց որակական առումով բացասական հաշվեկշիռն ակընհայտ է: Հիմա այնպիսի մարդիկ են գիտական ոլորտներում դիպլոմներով աչքի ընկնում, որ իսկական գիտնականները, երևի, ամոթից լռում են, բայց սա այլ խոսակցության թեմա է:

Կուզենայի բոլորիս ուշադրությունը կենտրոնացնել «գիտակրթական համակարգ-տնտեսության իրական հատված փոխհարաբերություններին, որոնք ներկայիս Հայաստանում գրեթե չեն գործում: Իսկ եթե մենք ուզում ենք ինովացիոն տնտեսություն ունենալ և աշխատանքի միջազգային կամ տարածաշրջանային բաժանման մեջ գտնել մեր հաստատուն տեղը, ապա միանշանակ է, որ, պատկերավոր ասած, մեր ուղեղները պետք է ոչ թե արտահանվեն, այլ ընդհակառակը` պետությունը պետք է պայմաններ ստեղծի, որպեսզի մեր հայրենակիցներն իրենց ունակություններն իրացնեն Հայաստանում: Այլապես մենք տարեցտարի կվերածվենք զարգացած երկրների անորակ ապրանքների սպառման շուկայի:

Օրինակ, Ռուսաստանի Դաշնությունում կա պետական մոտեցում: Համապատասխան ֆոնդերի միջոցով ֆինանսավորվում են գիտական ծրագրերը, որոնք ունեն գործնական նշանակություն, նանոտեխնոլոգիաների ոլորտում կան հատուկ պետական ծրագրեր, այդ իսկ պատճառով գիտություն-տնտեսություն կապը առավել էֆեկտիվ է, իսկ պետական ներդրումները այդ ոլորտում շահավետ: Էլ չեմ խոսում զարգացած շուկայական երկրների մասին, որտեղ շատ ամուր հիմքերի վրա է դրված գիտելիքատար տնտեսության համակարգը:

Անշուշտ, մենք չունենք ՌԴ ֆինանսական հնարավորությունները, բայց պետք է ձգտենք մեր ունեցածի չափով տեր կանգնել մեր գիտական պոտենցիալին, որպեսզի մարդիկ չլքեն Հայաստանը:

Այսօր հին սերնդի մասնագետները ծերանում են, իսկ նոր սերունդը, կրթական համակարգի թերի և կոռումպացված լինելու պատճառով, շատ է զիջում հներին: Նոր սերնդի այն փոքրաթիվ հատվածը, որն ունի մասնագիտական բարձր մակարդակ, տարբեր պատճառներով հիասթափված կամ դժգոհ, լքում է երկիրը և իր մտքով ու կարողություններով հզորացնում օտար պետությունները: Մենք չենք կարող Ազգային Ժողովում մշակել այնպիսի օրենքներ, որոնք կարգելենմերերիտասարդմասնագետներին

➲10

**Մեծերի կյանքից**



# Շիրազ եւ Սեւակ

Պարույր Սևակի մահվան օրերին, այն ժամանակ, երբ մամուլը հեղեղված էր Սևակով, նրա գրչակից ընկերը` Հովհաննես Շիրազը, մռայլ նստում էր մութ սենյակում:

- Լուսավորե՛ք սենյակը, Վարպե՛տ, - դիմում էին նրան ընկերները:

- Չէ՛, ի՞նչ կըսեք, Սևակն է մահացել: Հանճարեղ մարդ, ահավոր մահ, - հառաչում էր նա: - Դաժան ու անարդար մահեր շատ տեսա: Սևակի վախճանը ցնցեց ինձ. մեծերը կամ մեծ ու իմաստուն մահով են մահանում, կամ բախտի կատակով, - իր ընկերոջ համար մորմոքում էր Շիրազը:

Հովհաննես Շիրազի և Պարույր Սևակի հարաբերությունները առեղծվածանման մի երևույթ էին:

Մինչդեռ բանաստեղծի որդին` Սիփան Շիրազը, իր հուշերում գրում է. «Ոմանք մինչև հիմա էլ չարախոսում են, թե Շիրազը Սևակին չէր սիրում, Սևակը` Շիրազին: Ամենևին ո՛չ: Հայրս սիրում, գնահատում էր Պարույր Սևակին, նրա «Եղիցի Լույսը», «Անլռելի զանգակատունը»: Այլ բան է, որ ասում էր. «Սևակը ավելի շատ մտքի բանաստեղծ է, քան հույզի, պատկերի»:

Սա մաքրամաքուր անկեղծության պարզ մի գնահատական է, գնահատական, որ կարող էին միմյանց մասին ունենալ ու արտահայտվել նույն ժամանակի, նույն ժողովրդի, նույն գրականության երակը բռնած արվեստագետները: Պարզապես, այսպես կոչված` վերևներին ձեռնտու չէր նրանց միասնականությունը, սերտացումը:

Պարզապես ժամանակը, ժամանակի կերպն ու մթնոլորտը այդպիսին էին` ապազգային, և սուր աչքը իսկույն կնկատեր: Երկու մեծերը չպիտի միավորվեին (թեև հոգևոր կապն անհնար էր խզել), և հենց այս իմաստով լավագույնս աշխատեցին ժամանակի գրողական աշխարհի փոշեհիշատակ խամաճիկները. Շիրազին կեղծ լուր կբերեին, թե` Սևակը քո հասցեին էս ասաց, Սևակին, թե` Շիրազը քո հասցեին էն ասաց: Խորանանք եղելության մթնաշխարհը, թե չէ` կարևորագույնը պարզ է ...Պատրաստ էր ողբերգությունը. Պարույր Սևակը չկար...

Երեկոյան, ուշ ժամին, Շիրազը թակում է դիահերձարանի դուռը: Պահակը դռան անցքից նայում-ճանաչում է Շիրազին, դուռը բացում:

- Ո՞րն է Պարույրը...

Պահակը ցույց է տալիս: Շիրազը հուզախեղդ մոտենում, սպիտակ սավանը հետ է քաշում` քարանում-արտասվում է: Ապա լուռ շրջվում, շտապ դուրս է գալիս, հեռանում: Դիահերձարանի զարմացած պահակը դռան առջև հավաքված Սևակի մի քանի ընկերներին հարցնում է. «Սևակը Շիրազին ի՞նչ բարեկամ է գալիս...»: «Հիշողությանս մեջ, - շարունակում է Սիփանը, - նաև վառ, այսօրվա լույսի նման վառ է հայրիկի հետևյալ խոսքը` «Ես Մասիսն եմ, Սևակը` Սիսը»:

Այսքանից հետո ո՞ր միամիտի մտքով կարող էր անցնել անհեթեթությունը, թե Սևակն ու Շիրազը միմյանց հետ չունեին...»:

*Մ. Շ.*

## ԱՎԱՆԴԱՊԱՏՈՒՄ * ԶՐՈՒՅՑՆԵՐ * ՀԱՅԿԱԿԱՆ ԱՎԱՆԴՈՒՅԹ

### Աղվես եւ որսորդ

Որսորդը շներով տանջում ու նեղում էր աղվեսին: Աղվեսը դարձավ և հարցրեց. «Աղաչում եմ քեզ, ասա` ինչի՞ համար ես ինձ նեղում»: Որսորդն ասաց. «Որպեսզի հանեմ քո մորթին»: Աղվեսը կանգնեց և ասաց. «Տե՜ր Աստված, փառք քեզ, որ սրա ուզածն այս է: Իսկ ես կարծում էի, թե ինձ ուզում է նշանակել մեր գավառի հավարած կամ թռչնոցի վանահայր»:

### Իշխանավոր եւ իմաստուն

Կար մի աշխարհակալ իշխանավոր, որն ուներ մի շատ գեղեցիկ տղա: Եվ իշխանավորը որոշեց, թե` գեղեցիկ աղջիկ կառնեմ, որ կին լինի իմ որդուն և ունենամ գեղեցիկ թոռներ` ժառանգ իմ գահի: Եվ գնաց բերեց մի գեղեցիկ հարս և դեռ թոռ չէր ունեցել, երբ որդին մեռավ, և հարսը մնաց: Ինքը կամեցավ հարսին առնել և հարցրեց իմաստուններին, թե` «Կա՞ իրավունք», և նրանք ասացին, թե` «Չկա՛ իրավունք, որ հայրն առնի հարսին»: Չկամեցավ լսել նրանց և գտավ մի ուրիշ իմաստուն, որ նրա սիրելին էր, և այդ իմաստունն ասաց իշխանավորին. «Աշխարհում յոթանասուներկու ազգ կա և նրանցից ոչ մեկին չի հասնում այդ բանը, բայց քեզ կհասնի»: Իշխանավորն ասաց` «Ինչո՞ւ աշխարհի յոթանասուներկու ազգին չի հասնում այդ, իսկ իրեն կհասնի»: Իմաստունը պատասխանեց. «Վախենում եմ պատճառն ասել, որովհետև կսպանես ինձ»: Եվ նա երդվեց չպատժել նրան, եթե պատճառն ասի: Այն ժամանակ իմաստունն ասաց. «Որովհետև դու ամեն ազգից դուրս ես, և քո վրա չկա իշխանություն, և ամեն ինչ կարող ես անել»:

### Աղվես եւ թղթապար գայլ

Աղվեսը մի գրած թուղթ գտավ, տարավ գայլին և ասաց. «Այսչափ ժամանակ աշխատեցի, բարեխոս մարդիկ մեջ գցեցի և իշխանից քեզ համար թուղթ հանեցի, որ ամեն գյուղ, ուր հանդիպես, քեզ պիտի տա մի ոչխար»: Այդպես խաբեց գայլին, և միասին գնացին մի գյուղ: Աղվեսը նստեց բլուրի վրա և թուղթը տվեց գայլին: Երբ գայլը գյուղի մեջ մտավ, վրա թափվեցին շները և մարդիկ, նրան գզեցին ու գանահարեցին: Արնաթաթախ գայլը հազիվ ազատվելով` հասավ աղվեսին: Աղվեսն ասաց. «Ինչո՞ւ թուղթը ցույց չտվիր»: Եվ գայլն ասաց. «Ցույց տվեցի, բայց գյուղում հազար շուն կար, որ գիր չգիտեր»:

***Հակոբ ՍՈՂՈՄՈՆՅԱՆ***

9➲

## ՄԱՐԴԿԱՅԻՆ ՌԵՍՈՒՐՍՆԵՐԻ ԿՈՐՈՒՍՏ

լքել հայրենիքը: Սակայն կարող ենք ունենալ այնպիսի օրենքներ, որոնք կաջակցեն հայրենական արդյունաբերությանը: Դա էլ իր հերթին կնպաստի նոր աշխատատեղերի ստեղծմանը և երկրի մարդկային մտավոր կարողությունները կծառայեցնի մեր երկրի տնտեսության զարգացմանը: Այս ձևով մեր գիտաշխատողները, մասնագետները և արհեստավորները հնարավորություն կունենան աշխատելու հայրենական որևէ արդյունաբերական ձեռնարկությունում, պատշաճ կերպով վարձատրվեն և արժանապատվորեն ապրեն իրենց հայրենիքում, առանց արտագաղթելու մասին հետին մտքերի: Հուսով եմ, որ մեր կառավարությունը սա քաջ գիտակցում է:

Ուղեղների արտահոսքը մեր վաղվա հետընթացի հիմնական նախապայմանն է դառնալու, եթե արդեն չի դարձել: Սա այն դեպքն է, երբ արտահանումն ի վնաս մեզ է: Ուստի կարիք կա վերանայելու և բարեփոխելու պետության վերաբերմունքը հայրենական արտադրության և տեղական կադրերի պատրաստման ու պահպանման նկատմամբ: Առանց զարգացած հայրենական արտադրության մենք չենք կարողանա երբևէ ունենալ տնտեսական նվաճումներ և բարեկեցիկ կյանք ապահովել մեր երկրի քաղաքացիների համար:

***Կարեն ՎԱՐԴԱՆՅԱՆ,***
***ՀՀ ԱԺ պատգամավոր,***
***ՀՀ ԱԺ տնտեսական հարցերի մշտական հանձնաժողովի անդամ***

*Վահան Տերյանի ծննդյան 125-ամյակը*

# ՏԵՐՅԱՆԸ՝ ՀԵՌՈՒ ԵՎ ՄՈՏ

«Տաղանդավոր գրողները զարդարում են գրականությունը, տաղանդավոր մարդիկ զարդարում են կյանքը»: Վահան Տերյանը սա ասում էր գրական կյանքն ու մարդուն, աշխարհին ու կյանքի երևույթները ճանաչողի և ճանաչելի դարձնողի իր իմացությամբ, իր փորձով: Մենք նրա ասածը արդարացիորեն կարող ենք վերագրել իրեն՝ որպես մեր գրականությունը զարդարողի, իր քնարերգությամբ մեր հոգևոր կյանքը հարստացնողի:

Այսօր, ինչպես ամեն տարվա այս օրը, առավոտից Հայոց Մեծերի Պանթեոնում կհավաքվեն Տերյանի պոեզիայի երկրպագուներ, կասեն գնահատանքի խոսքեր, նրա պոեզիայից նմուշներ կարտասանեն, կերգեն նրա տողերով գրված երգեր: Իրենց ուսուցիչների ուղեկցությամբ խումբ-խումբ աշակերտներ կգան, կգան ուսանողներ՝ սիրո արտահայտման տերյանական մեղմությունը պահած իրենց սիրելիներին ասվող խոսք որպես: Այս օրը Տերյանի հանդեպ այս նույն վերաբերմունքով Օրենբուրգի մշակույթի տանն են հավաքվում ռուս ընթերցողի համար գրված Լեոնիդ Բուլշակովի «74 օր անմահությունից առաջ կամ՝ Վահան Տերյանի վերջին գործուղումը» գրքի շնորհիվ Տերյանի կյանքին ու պոեզիային ծանոթ երիտասարդներ ու տարեցներ: «Վահան Տերյանի պատանի բարեկամներ» կազմակերպության անդամներն են կազմակերպում ամենամյա ցերեկույթը՝ «Տերյանի անունն այս քաղաքում մշտապես լսելի պահելու համար»: Այդ գիրքը, այդ միջոցառումը հայ պոետի հանդեպ ունեցած ջերմության, սիրո և ակնածանքի արտահայտություն է, Տերյանի հիշատակի խնկարկումի մի հրաշալի օրինակ:

Ամեն ինչի մեջ խորհուրդ դնողի մաքուր սովորությամբ մենք Մեծերի Պանթեոնում մի կտոր մասունք ենք ամփոփել ու շիրմաքար դրել: Բոլորս էլ գիտենք, որ Տերյանի շիրիմն այստեղ չէ՝ հեռավոր Օրենբուրգում է, գիտենք, բայց Տերյանին մեր կողքին պահելու բերկրանքն ունենալու հաճությամբ ուխտատեղի ենք դարձրել նրա անվամբ այս փոքրիկ անկյունը՝ իր գրչակից ընկերների կողքին: Նա ինչ է, կանխազգու՞մ էր հայրենիքից շատ հեռու եկող իր ողբերգական մահը: Այդ ի՞նչ զգացողություն, այդ ինչ կանխազգացում էր, որ նա պիտի գրեր.«Իմ գերեզմանը թող լինի հեռվում, /Ուր մահացել են շշուկ, երգ ու ձայն. /Թող շուրջըս փռվի անանց լռություն, /Թող ինձ չհիշեն, թող ինձ մոռանան»: Նա սխալվեց միայն իրեն մոռանալու առումով, մնացածը, ավաղ, մարգարեական ճշտությամբ կատարվեց: Ավետիք Իսահակյանը պիտի կսկիծով վկայեր. «Մրրկաշունչ ստեպներում, հայրենի օջախից շատ հեռու, դառնագին հիվանդության ճիրաններում դադարեց բաբախել մի խորունկ սիրտ, դադարեց գործել մի մեծ ինտելեկտ, որ ծնված էր



զգալու և խորհելու, ստեղծագործելու և իմաստավորելու մարդկային գոյությունը»:

Տերյանը, այո, իմաստավորեց իր կյանքը, նաև մեզ սովորեցրեց մաքուր ապրումներով իմաստավորել մեր աշխարհը, սովորեցրեց մեկ մեկու հանդեպ բարի ու քնարական մոտեցում ունենալ, սիրել միմյանց ու ապրել «բարձր զգացմունքների և մաքուր խոհերի աշխարհում»: Ի՜նչ բնորոշ գնահատանք է տվել Եղիշե Չարենցը՝ իր ավագ գրչակցի պոեզիան համարելով «նաիրյան խոսքերի գանձարան»: Հայ իրականության մեջ բոլոր ժամանակների համար Տերյանը մնում է բարձր արվեստների տիրակալը: Վկայությունը իր ժամանակակիցների անթաքույց խոստովանանքը հայ մշակույթում նրա զբաղեցրած անփոխելի տեղի ու դիրքի մասին ու նաև՝ մեր ժամանակի մշակույթի գործիչների գնահատանքը: Ահավասիկ, Տիգրան Մանսուրյանի վերաբերմունքը. «Կատարյալ պատկերներ, գույների, նրբերանգների, զգացողությունների անասելի ներդաշնակություն, ապրումի կատարյալ բյուրեղ վիճակ, և, մանավանդ այդքան լուռ ասված, առանց կոչականների, առանց արտաքին ժեստերի՝ զուտ ներհայաց, զուտ աչքի տեսածի մաքուր ապրում, անխաթար դրսից ներս և հետո՝ բանաստեղծություն... նա բերեց բանաստեղծական հսկա կուլտուրա... Մարգարե էր Տերյանը՝ լեզվի իմաստություններ բերող, շքեղություն ու լեզվի հետ համապատասխան կենցաղ բերող մարգարե»:

Խորհրդային տարիներին դպրոցական ու բուհական ձեռնարկներ գրողները մի քիչ այս զգացողությունն ունենային (կամ՝ իրավունք ունենային), որպեսզի Վահան Տերյան բանաստեղծին չներկայացնեին սոսկ աշնանային թախծոտ երգիչ: Այդ տարիներին դպրոցականին և ուսանողին հասու չէին բանաստեղծի հրապարակախոսական հոդվածները, նրա հրապարակային ելույթները, իր ժամանակի մամուլում ծավալած կրակոտ վիճաբանությունները՝ հայ գրականության ներկա վիճակի և անցնելիք ճանապարհի մասին: Էլ չենք ասում գրչակից ընկերներին ու մտերիմներին գրված նրա բազում նամակները, որոնցում պարզորոշ արտահայտված է հայրենի գրականության ու մշակույթի ներկայով ու ապագայով մտահոգ մարդու վերաբերմունքը:

Տերյանի դասերը ուսանելի են բոլոր ժամանակների սերունդներին՝ դրանք բոլոր ժամանակների համար ասված ու գրված մտքեր են՝ միայն դասականներին բնորոշ: Օրինակներից մեկը: Այսօր Եվրոպական ընտանիքին ինտեգրվող մեր երկրի առջև ի՞նչ մարտահրավերներ են դրված՝ դրանց մասին իր դատողությունները Տերյանն անում էր դեռ անցյալ դարասկզբին՝ հարյուր տարի մեր օրերից առաջ, և նրա այդ մտքերը նույնությամբ կրկնելի են ու այժմեական այսօր էլ. «Կուլտուրական մի ազգ լինելու համար մենք պետք է ամբողջապես յուրացնենք Եվրոպայի ժամանակակից կուլտուրան և միայն այն ժամանակ կարող ենք ազգային կուլտուրա ստեղծել... մենք պետք է նախ դուրս գանք մեր այժմյան ազգային կճեպից և ընդգրկենք լայն հորիզոններ... Իսկական գեղարվեստի համար կարևորը ոչ թե հագուստն է, արտաքինը, այլ ներքինը, հոգին...»: Ահա այսպես՝ կոնկրետ ասելիք, ուղղություն տվող ասելիք:

**Հ. Գ.** Միայն այսօ՞ր՝ իր ծննդյան օրը, թե՞ փորձենք մեծանուն պոետի ծննդյան 125-ամյակի տարին դարձնել տերյանական տարի, և ամեն օր այդ մեծ քնարերգուի պոեզիային հաղորդվելու առիթներ ստեղծենք, փորձենք ապրել այն զգացողությունը, ինչ ուներ ու ինչի մասին այդպես սիրով գրում էր Եղիշե Չարենցը. «...Մի զարմանալի՜ քնքուշ և խնդագին զգացմունք եմ ունենում յուրաքանչյուր անգամ, երբ հիշում եմ, որ այնտեղ, գրասեղանիս դարակում պահված են Տերյանի-իսկակա՞ն եք-իսկական նրա ձեռագրերը... Նրա ձեռքով գրված այդ թերթիկները... Երբ անչափ տխուր եմ լինում-հանում եմ և՝ նայում... Կարծես արեգակն է պահված իմ գրասեղանի դարակում...»:

Արժե, անշուշտ, որ մեր մեծերի հանդեպ այդ քնքուշ վերաբերմունքն ունենանք, և Տերյանի պարագայում, նրա՝ «Բարի հիշեք ինձ ձեր սրտում» հարցմանը սիրով պատասխանենք. «Մենք քեզ պահում ենք մեղքի պես թովիչ, ցավի պես խելառ ոսկեշղթա մեր հուշերում»:

***Հովհաննես ՊԱՊԻԿՅԱՆ***

# ԲԱՔՈՒ ՄԵԿՆԵԼԸ ԽՆԴԻՐ ՉԷ, ԵԹԵ...

Մրցաշրջան 2010-ը Հայաստանի ըմբիշների համար հաջող սկսվեց: Մեր հունահռոմեականները աշխարհի գավաթի խաղարկությունում կրկնեցին անցած տարվա Ֆրանսիայի ձեռքբերումը` հողագնդի ութ ուժեղագույն երկրների մեջ ճանաչվելով երրորդը:

Սակայն տարվա ընթացքում նոր փորձություններ էլ են սպասվում, որոնցից գլխավորը, թերեւս, ապրիլին Բաքվում կայանալիք Եվրոպայի առաջնությունն է:

Հանրապետությունում մարզաձեւի ներկա վիճակի եւ ապագայի մասին Հայաստանի ըմբշամարտի ֆեդերացիայի 1-ին փոխնախագահ եւ գործադիր տնօրեն Հովհաննես Սոֆոյանի հետ հարցազրույցը:

- *Պարոն Սոֆոյան, աշխարհի գավաթի խաղարկության ընթացքից գո՞հ եք:*

- Կազմակերպական առումով` անչափ: ՖԻԼԱ-ի նախագահ Ռաֆայել Մարտինետին էլ հատուկ նշում էր, որ աշխարհի ուրիշ ոչ մի երկրում նման բան չի տեսել: Նույնն էին ասում նաեւ հյուրերը:

- *Ինչպե՞ս դա ձեզ հաջողվեց անել:*

- Նախապատրաստության ընթացքում կազմկոմիտեն նկատի էր առել հնարավոր ամեն մի մանրամասն, կազմել անելիքների հստակ ծրագիր: Այդ ամենը, հասկանալի է, հնարավոր էր համապատասխան ծախսեր ապահովելով:

- *Ի՞նչ գումարների մասին է խոսքը:*

- Նախնական հաշվարկներով, բոլոր հարցերը պահանջվող մակարդակով լուծելու համար, անհրաժեշտ էր լինելու մոտավորապես 600 հազար դոլար, ինչը սեփական միջոցներից տրամադրեց մեր ֆեդերացիայի նախագահ Սամվել Կարապետյանը: Սակայն վերջին պահին առաջացան նոր խնդիրներ, որոնք նույնպես պարոն Կարապետյանը ժամանակին լուծեց: Մրցաշարի հաջող անցկացմանը մեծապես աջակցեց նաեւ ՀԱՕԿ-ի նախագահ Գագիկ Ծառուկյանը:

- *Իսկ մեր հավաքականի մարզական արդյունքների մասին ի՞նչ կասեք:*

- Երկու տարի անընդմեջ աշխարհում ըմբշամարտի երրորդ երկիրը լինելը վատ չէ: Բայց, անկեղծ ասեմ, մերոնք ավելիի էին արժանի: Հատկապես Իրանի հետ մրցապայքարում, իմ կարծիքով, 3:4 հաշվով զիջելու մեջ մեղքի իրենց չափաբաժինն ունեցան նաեւ մրցավարները: Մանրամասների մեջ չխորանանք: Բայց պատկերացրեք. մենք` Կուբային հաղթում ենք 7:0 հաշվով, Իրանը` 4:3: Ինչպե՞ս եղավ, որ ուժերի այդպիսի հարաբերակցության պայմաններում մենք 3:4 հաշվով զիջեցինք հարեւան երկրին:



- *Այսինքն` տան պատերը չօգնեցի՞ն:*

- Այդ արտահայտությունը ենթադրում է, թե մրցավարությունը, որպես կանոն, չի «նեղացնում» կազմակերպիչ երկրին: Մենք նման բան չենք էլ մտածել: Ցանկացել ենք, որպեսզի ամեն ինչ ընթանա մարզական ազնիվ պայքարում:

- *Առջեւում Բաքվում մեկնարկելիք Եվրոպայի՜ առաջնությունն է: Մենք, ի վերջո, մեկնելո՞ւ ենք Ադրբեջան:*

- Ֆեդերացիայի եւ օլիմպիական կոմիտեի նախագահները, հունահռոմեական եւ ազատ ոճերի հավաքականների գլխավոր մարզիչները բազմիցս հայտարարել են, որ ոչ միայն ցանկանում են անպայման մասնակցել, այլեւ` մեդալներ նվաճել: Մենք ամենայն լրջությամբ նախապատրաստվելու ենք ու Բաքու մեկնելու հարցում խնդիր չունենք: Մնացածը կախված է Ադրբեջանից եւ այդ ժամանակաընթացքում քաղաքական իրավիճակից: Նրանք, ինչպես նախորդ անգամ աշխարհի առաջնությունում, պիտի` մեր պատվիրակության, հատկապես` մարզիկների անվտանգության լիարժեք երաշխիքներ տան, ապահովեն բնակության, արգումային, հոգեբանական, սննդի կատարյալ պայմաններ: Այս ամենի համար դեռ բավականին մեծ աշխատանք ունենք կատարելու առաջին հերթին ՖԻԼԱ-ի եւ հարեւան երկրի համապատասխան կառույցների հետ:

- *Իսկ եթե Բաքու մեկնել հնարավոր չլինի, աշխարհի առաջնությանը մասնակցելու իրավունքից չե՞նք զրկվի:*

- Ոչ: 2008 թվականի օլիմպիական խաղերից առաջ նման օրենք կար: Եթե որեւէ քաշային կարգում մայրցամաքի առաջնությանը չէիր մասնակցում, զրկվում էիր այդ քաշում աշխարհի առաջնությունում ներկայացուցիչ ունենալուց: Հիմա այլ է: Եթե տվյալ ազգային ֆեդերացիան այս կամ այն քաշային կարգում չմասնակցի մայրցամաքի առաջնությանը, աշխարհի առաջնության ժամանակ յուրաքանչյուր քաշային կարգի համար տուգանք է վճարում եւ մասնակցելու իրավունք ստանում:

- *Իսկ եթե չմասնակցելը տվյալ ֆեդերացիայի մեղքով չէ՞:*

- Այդ դեպքում խանգարող ոչ մի հանգամանք չկա:

- *Վերադառնանք աշխարհի գավաթի խաղարկությանը: Ռաֆայել Մարտինետին Սամվել Կարապետյանին, ձեզ, ֆեդերացիայի փոխնախագահ Հրանտ Ենոքյանին եւ գլխավոր քարտուղար Բագմասեր Առաքելյանին ՖԻԼԱ-ի պարգեւներ շնորհեց: Ի՞նչ պարգեւներ էին եւ ինչի՞ համար:*

- Առիթը Երեւանում աշխարհի գավաթի խաղարկությունը բարձր մակարդակով կազմակերպելն էր: Պարոն Կարապետյանին` հանձնվեց ՖԻԼԱ-ի բարձրագույն պարգեւը` ոսկե երիզով արծաթե պլակետ, ինձ` որպես նաեւ կազմկոմիտեի նախագահի, եւ Հրանտ Ենոքյանին` արծաթե շքանշան, Բագմասեր Առաքելյանին` բրոնզե շքանշան:

- *Ասուլիսներից մեկում ֆեդերացիայի աշխատակիցները հայտարարեցին, թե ֆեդերացիայի նախագահը 2009 թվականին Հայաստանում ըմբշամարտի զարգացման համար ծախսել է մոտ 1 մլն դոլար:*

- Ավելի ճշգրիտ թիվ ասեմ` 1 մլն 240 հազար դոլար: Դրա մեջ մտնում է` նաեւ մոտ 200 մարզիկների եւ մարզիչների` ամսական մինչեւ 700 հազար դրամ ամենամսյա թոշակը: Ներդրումների եւ աշխատանքները ճիշտ կազմակերպելու արդյունքն է, որ մեր մարզաձեւում նվաճումները տարեցտարի ավելանում են:

- *Այս տարի ներդրումների այդ չափը կպահպանվի՞:*

- Կտրուկ կավելանա: Տարին դեռ նոր է սկսվել, բայց արդեն աշխարհի գավաթի խաղարկության համար ծախսվել է մոտ 700 հազար դոլար: Սա ֆեդերացիայի տարեկան ծախսերի հետ կապ չունի: Անցած տարվա գումարը հաստատ կպահպանվի: Բայց եթե հավաքականների մարզիչները հիմնավորված նոր առաջարկներ ներկայացնեն, դրանք էլ կֆինանսավորվեն:

**Յ.Գ.** Հարցազրույցի ավարտին ՀՀ ըմբշամարտի ֆեդերացիայի փոխնախագահ Բագմասեր Առաքելյանը խնդրեց փոխանցել հետեւյալը. «ԶԼՄ-ներում տեղեկատվություն է հրապարակվել, իբրեւ թե ես ասել եմ, որ Ադրբեջանը ՖԻԼԱ-ին տարեկան փոխանցում է 5 մլն դոլար: Ադրբեջանը, իրոք, ՖԻԼԱ-ին հովանավորում է: Բայց թե որքան, ես չգիտեմ»:

**Աշոտ ՅԱԿՈԲՅԱՆ**

## ՌՈՒՍԱՍՏԱՆԻ ԱՄԵՆԱՀԱՐՈՒՍՏ ՀԱՅԵՐԸ

«Ֆինանս» հանդեսը հրապարակել է 2010 թվականի Ռուսաստանի` ամենահարուստ մարդկանց ցուցակը, ըստ որի` Ռուսաստանի ամենահարուստ 9 հայերի ընդհանուր կարողությունը կազմում է 4,8 միլիարդ դոլար, տեղեկացնում է «Արմինֆոն»:

ՌԴ ամենահարուստ հայերը Դանիել եւ Սերգեյ Խաչատուրովներն են, ովքեր «Ռոսգոսստրախ» ընկերության, ինչպես նաեւ մի շարք ֆինանսական եւ անշարժ ակտիվների համասեփականատեր են: Խաչատուրովների ընդհանուր կարողությունը կազմում է 1,58 միլիարդ դոլար: Երկրորդ տեղում են Նիկոլայ եւ Սերգեյ Սարգիսով եղբայրները, որոնց ընդհանուր կարողությունը կազմում է 1,56 մլրդ դոլար: Սերգեյ Սարգիսովը «Ռեսո» եւ «Ռեսո-գարանտիի» տնօրենների խորհրդի նախագահն է, իսկ Նիկոլայ Սարգիսովը «Ռեսո-գարանտիի» փոխնախագահը: Վերջին տարում Սարգիսովների կարողությունն ավելացել է 60 միլիոն դոլարով: Երրորդ տեղում «Տաշիր» ընկերության հիմնական սեփականատեր եւ ընկերությունների խմբի նախագահ Սամվել Կարապետյանն է, ում կարողությունը կազմում է 0,58 միլիարդ դոլար:

«Տրոյկա դիալոգի» տնօրենների խորհրդի նախագահ եւ հիմնական սեփականատեր Ռուբեն Վարդանյանի կարողությունը 0,39 միլիարդ է: Վերջին տարվա ընթացքում նրա կարողությունն ավելացել է 90 միլիոնով: «Բորոդինո» բազմապրոֆիլ հոլդինգի սեփականատեր Տիգրան Ներսիսյանի կարողությունը` 0,38 մլրդ դոլար է: «Զենիթ» բանկի սեփականատեր եւ «Ցենտր Կապիտալ» լիզինգային ընկերության նախագահ Իգոր Ավանեսյանն ունի 0,2 մլրդ դոլար: Sun Investments Partners ընկերության համասեփականատեր Արտյոմ Խաչատրյանն էլ այս պահին գոհանում է 0,11 միլիարդ դոլարով:

***Պետք է լավը, բարին մեր կողքին փեսնենք եւ ըստ արժանվույն գնահատենք***

Խոսուն է նրա վաստակը, ապրածի, նվիրումների շնորհիվ ձեռքբերումների ամբողջությունը, որ երիտասարդ հասակն իսկ դարձրել է բեղուն, իմաստավոր...

# Կենսական անզուսպ ուժերով առլեցուն բժշկուհին

Ժողովրդական իմաստությունը մի անհերքելի ճշմարտություն է թելադրում. առողջ լինելու գաղտնիքը չհիվանդանալու մեջ է:

Բայց և այնպես մեր ժամանակներում անկանխատեսելի են և՛ մարդու առողջությունը, և հիվանդությունները: Բայց կա և չարյաց փոքրագույնը, եթե ասենք… բժիշկդ Վանաձորի թիվ 2 հիվանդանոցային համալիրի հակապալարախտային բաժանմունքի վարիչ Մարինե Լորիս-Ռուսոն է, կարող ես չկասկածել, որ... հուսալի ձեռքերում ես:

Բժիշկների մասին խոսելիս հաճախ օգտագործում ենք «տքնում են» արտահայտությունը: Պալարախտաբանի մասնագիտությունն ընտրելը հենց յուրովի տքնանք է: Շփվել տասնյակ վարակիչ հիվանդների հետ, բացառված չէ, նույնիսկ հիվանդանալ... բայց այդ առաքելությամբ ապրել, գտնել, ախտորոշել, բուժել: Այդպիսի շնորհը Աստվածատուր է:

Թվում է՝ պիտի ցած դնել գրիչը: Թվում է՝ էլ ասելիք չկա: Բայց շամլուղցի նախկին երկրաբան 82-ամյա Վոլոդյա Վարդումյանի երախտիքի խոսքերի տպավորությամբ, ասես կանգնել էի տաճարում՝ աղոթքս մոռացած:

Բժշկուհի Մարինե Լորիս-Ռուսոն նորից կյանքի կոչեց ինձ: Չգիտեմ երախտիքի ինչ խոսքեր ասեմ, չգիտեմ հոգուս ճիչը ինչ ձևով մատուցեմ: Նորից կյանք տվեց... կյանք... ավելի թանկագին ի՞նչ կա աշխարհում: Օրինակ, բժշկուհի **Մարինե Լորիս-Ռուսո**:

Կենսական անզուսպ ուժերով առլեցուն մարդը չի կարող մենակ ապրել: Նրա բոլոր զգացմունքներին ուղեկցում են դրան համապատասխանող զգացումների ու հակումների ծգողական ուժը, ներգրավվում նրա կյանքի հորձանուտը, այնպես որ Մարինե Լորիս-Ռուսոն ոչ սովորական կյանքով ու զգացմունքներով է ապրում և զգում, նրա զգացողությունը մի քանի անգամ ավելի հարուստ ու բազմազան է, նրա գոյությունն ասես, կրկնապատկված:

Չնայած իր նվիրվածությանն ու պրոֆեսիոնալիզմին, երբեք չի շրջանցել ներքին մի մտավախություն, քանի որ յուրաքանչյուր հիվանդի հետ հանդիպումը նա սկսում է իր համար նույն հարցով. «Ես կհաղթե՞մ, թե՞…»:

Քանի, քանի կյանք ես փրկել ու քո երջանկությունը դրա մեջ գտել, սիրելի՛ բժշկուհի:



Եվ ինչ լավ է, որ մենակ չես քո վեհ գործում, ահա լաբորատորիայի բժշկուհի Մարիամ Այվազյանը, ավագ բուժքույր Վիկտորիա Պետրոսյանը, բուժքույրեր Աննա Ղուկասյանը, Անահիտ Սահակյանը, մայրապետ Վալյա Սաղումյանը...

Եվ թող հարյուրավոր մարդկանց օրինանքը միշտ Ձեզ հետ լինի, որ կարողանաք և՛ ընտանիքի, և՛ շրջապատի, և՛ հիվանդների, և՛ ընկերների հոգսերը կիսել ու միշտ մնալ այդպիսին՝ բարի, հոգատար, ժպտերես ու գեղեցիկ:

Մարդուն կյանքի վերադարձնելու առաքելությունը ամեն մեկին չի տրված: Դա հոգու և մասնագիտության փոխկապակցության մենաշնորհ է:

***Լեւոն ԽԱՉԱՏՐՅԱՆ***

# ՀԱՅԱՍՏԱՆ. ՄԻ ՍԻՐՈ ՀԻՎԱՆԴՈՒԹՅԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

**Ախր ես ինչպե՞ս ապրեմ առանց ինձ...**

***ՀԱՄՕ ՍԱՀՅԱՆ***

Հայրենիքը և ծնողներին չեն ընտրում:

Այդպիսի խոսքուխրատ կա, որ հաճախ նաև այսպես են շարունակում. «Ծնողից ու հայրենիքից չեն նեղանում»: Ու հայերենը երևի այն եզակի լեզուներից է, որ ամենից ամփոփ է արտահայտում հայրենիք-ծնող միասնությունը: Չէ՞ որ ասում ենք՝ Մայր հայրենիք:

Ծնողին կորցրած երեխային որբ են ասում: Հապա ի՞նչ են ասում ՀԱՅՐԵՆԻՔԸ կորցրած մարդուն: Անհայրենիք գաղթական են ասում, թափառական գնչու... Այ թե ի՛նչ են ասում:

Ծնողից չեն նեղանում: Այո՛: Բայց դա ավելի շուտ խրատ է, որովհետև համարյա ամեն մարդ էլ, ինչ-որ մի տարիքում, հատկապես չափահաս դառնալիս, ծնողից նեղանալու մի պատրվակ է գտնում: Հետո իր սխալը հասկանում է միայն այն ժամանակ, երբ արդեն ինքն է ծնող դառնում: Կամ էլ հասկանում է, երբ արդեն չափազանց ուշ է լինում: Ուշ՝ սխալի գիտակցումը հայտնելու և ներողություն հայցելու համար:

Կամ էլ չի հասկանում ընդհանրապես: Ու այդ չհասկանալն է հիմնականում տրորված պահում ծերանոցտանող արահետը: Ծերանոցներում, հարկավ, բազում մարդիկ կան, որ բացարձակապես մենակ են մնացել այս աշխարհում, չունեն հարազատ-արյունակից: Ոչ ոք: Բայց չէ՞ որ ոչ բոլորն են այնտեղ «որբ» ծերեր:

Եվ, ամեն դեպքում, լքյալ ու մոռացված այդ մարդկանց պատմությունները, որքան էլ ծանր են ու ցավով լեցուն, ավելի շուտ բացառություն են մեր հասարակության մեջ: Որովհետև ծնողից, այնուամենայնիվ, չե՛ն նեղանում:

Ծնողից չեն նեղանում, այո՛: Բայց հայրենիքից խռովում են: Հաճախ՝ անդարձ: Խռովում են ու քթում-թողնում-հեռանում: Ու հայրենիքը աստիճանաբար ծերանոցի է նմանվում: Երևանում դուք դա չեք զգա: Ու չեք էլ զգում: Դուք՝ դեռ ոչինչ: Դա չեն զգում մարդիկ, ովքեր կառավարելու պատասխանատվություն են վերցրել:

Իսկ դա զգալու համար պիտի մի գյուղ գնաք, և արդեն հեչ կարևոր չէ, որ դա հեռավոր, սահմանամերձ գյուղ լինի: Արդեն մոտիկներում էլ կպտտվես, կշրջես ու կհամոզվես՝ ծերանոց է կամ շուտով կդառնա այդպիսին: Ամեն մի գյուղ մի «մենավոր ընկուզենի» է դարձել: Իսկ ջահելները ռուսաստաններում են, ֆրանսիաներում ու ամերիկանե-

➲14

# Կարծես ամեն ինչ ավարտուն է, բայց...

Հայտնի և կյանքում բազմիցս ամրագրված խոսք կա՝ ով առաջ չի գնում, նա հետ է գնում: Կանգնած դրություն չկա:

Սա Վանաձորի պետական բժշկական քոլեջի տնօրեն **Ջուլիետա Ջոկլինյանի** գործունեության կարգախոսներից մեկն է, որի կիրառման դեպքում միայն հնարավոր է ապահովել առաջընթաց, մեծ առումով՝ պարզապես ապրել:

Քոլեջը, որ հիմնվել է 1936 թվականին, անցել է կայացման, հասունացման և զարգացման հարուստ ճանապարհ: Առաջին շրջանավարտները 28-ն էին, որոնք համալրեցին տարածաշրջանի բուժհիմնարկների միջին բուժանձնակազմի շարքերը: Այսօր սաների թիվը մոտենում է 1000-ի, Վանաձորի պետական մանկավարժական համալսարանից հետո սովորողների թվով մարզում մեծությամբ երկրորդը: Խնդիրը, սակայն, քանակը չէ:

Սկսվեց որպես միջշրջանային դպրոց, ապա՝ տեխնիկում, եղավ կարճատև ընդմիջում, այնուհետև վերաբացվեց որպես մասնաճյուղ, առանձին ուսումնարան, իսկ 2004 թվականից՝ քոլեջ: Ժամանակի


Ուսումնարանը 88-ի երկրաշարժից հետո

ընթացքում ձևավորվեցին 20-ից ավելի լաբորատորիաներ ու կաբինետներ, ձեռք բերվեցին տեխնիկական միջոցներ, դիդակտիկ նյութեր, բուժքույրականից բացի


Ջուլիետա ՋՈԿԼԻՆՅԱՆ

բացվեցին «Ատամնատեխնիկական գործ», «Դեղագործություն», «Բուժական կոսմետոլոգիա» բաժիններ, հիմնվեց համաբուժարան, որն անվճար սպասարկում է ոչ միայն քոլեջի, այլև Վանաձորի մյուս ուսումնական հաստատություններում սովորող ոչ վանաձորաբնակ ուսանողներին: Այսօր քոլեջը պատրաստում է ինչպես բուժքույր, մանկաբարձ, դեղագործ, ատամնատեխնիկ, այնպես էլ մերսող, դիմահարդար, բուժական ֆիզկուլտուրայի հրահանգիչ, վարսահարդար, մատնահարդար, սոցիալական բնագավառի աշխատող: Հիմնական մասնագիտությունից բացի, ազատ ընտրությամբ, սովորում են գոբելենագործություն, ձեռագործություն, ասեղնագործություն և այլն:

Քոլեջում ուսուցումը կազմակերպվում է միջազգային չափորոշիչներով, ասել է՝ շրջանավարտը աշխատելու իրավունք ունի եվրոպական ցանկացած երկրում:

Կարևորը, ինչ խոսք, ներքին բովանդակությունն է: Սակայն վերջին տարիներին հատկապես, քոլեջն իր շենքային պայմաններով, արտաքին տեսքով Վանաձոր քաղաքում շահեկանորեն առանձնանում է: Ինչպես հիմնական, այնպես էլ ուսումնական երկրորդ մասնաշենքը հիմնովին վերակառուցվել է, ավելացել են լսարաններ, բարենորոգվել է վարչական մասնաշենքը, տարածքը երիզվել է զարդարուն ցանկապատերով...

Կարծես ամեն ինչ ավարտուն է:

Եվ, սակայն, կյանքում ամեն ինչ ձգտում է կատարելագործման. այդ գործընթացն անվերջ է, քանի գործում է միտքը, քանի դեռ որոնում կա: Ունեցածը, ձեռքբերումները կարելի է բազմապատկել փորձը հարստացնելու միջոցով: Իսկ դրան հասնելու կարճ ճանապարհը, ինչպես նկատում է Ջուլիետա Ջոկլինյանը, համագործակցությունն է համասեռ հաստատությունների հետ:

Արտերկրների՝ Ռուսաստանի Դաշնու-


Վանաձորի պետական բժշկական քոլեջը

թյուն, Իրան, ԱՄՆ կապեր հաստատելու փորձեր նախկինում եղել են: Հիմա արդեն գործնական քայլեր անելու ժամանակն է...

***Հովհաննես ԿԱՐԱՊԵՏՅԱՆ***

13⊃ ՀԱՅԱՍՏԱՆ. ՄԻ ՍԻՐՈ ՀԻՎԱՆԴՈՒԹՅԱՆ ՊԱՏՄՈՒԹՅՈՒՆ

րում: Գնացել են, «հանձնվել» ու խալխի ձեռին նայելով, խալխի մունաթի տակ՝ «երջանի՞կ են»:

Սպանես՝ այստեղ գետնին իր իսկ գցած ծխախոտի քթուկը չի վերցնի անգամ: Դիտողություն անես, բանը կարող է տարածաշրջանային կոնֆլիկտով վերջանա: Բայց մեկ էլ լսում ես, թե՝ «Բա էսինչին հիշո՞ւմ ես, մեր գեղի չոբան Սեքոյի տղուն: Հիշո՞ւմ ես: Հիմա Փրանսիայում է: Հա՜: Շատ էլ լավ տեղավորվել ա: Գործերը շատ լավ ա: Զուգարան ա մաքրում: Բա դե ի՞նչ անի, մարդը տուն ա պահում: Համ էլ ամոթ բան չի: Էնտեղի զուգարանները գինա՞ս ինչ թամուզ ա...»: Գիտեմ:

Ու այն գիտեմ նաև, որ տունն անտեր, տնամերձն էլ անմշակ թողած՝ գնում են: Իրենցից դժգոհ, կյանքից չբավարարված, հայրենիքից խռոված: Բարձրագույն կրթության դիպլոմը թևի տակ: Մեկ էլ իմանում ես, որ այսինչը հասել է Ֆինլանդիա, Բելգիա, Հոլանդիա: Ի՞նչ է անում: Ելա..., կներեք, «կլուբնիկ» է հավաքում: Բա ո՜նց: Բա ո՞վ պիտի ֆինլանդացոց «կլուբնիկն» ու «սմառոդինան» հավաքի, եթե ոչ Հայկազը, Կարենը, Մանուկը, Սիրուշն ու Սաթիկը, որպես անլեգալ, անիրավունք, «սև» աշխատուժ:

Ու գնում են: Գուցե մտքում ասում են, թե դա ժամանակավոր է, թե մի երկու տարի կաշխատեն ու հետ կգան: Բայց երևի իրենք էլ հասկանում են, որ հեչ էլ ժամանակավոր չէ, որ հետ չեն գալու, եթե գան էլ, ապա գալն է ժամանակավոր լինելու, ավելի խռոված ու ավելի մշտական գնալու համար: Ուղղակի գեղեցիկ սուտ է, որով սիրում են իրենց մխիթարել: Բայց ինքդ քեզ չես խաբի:

Ու գնում են: Որպեսզի հեռվից սիրեն: Որ «էրևանից» եկողի հետ ծիրան ու բաստուրմա ստանան, «էրևան» գնացողի հետ էլ մի երկու փալաս-փուլուս ուղարկեն կամ էլ մի չարքաշ 50 «օյ'րո», այսինքն՝ եվրո: Գնում են, որ հեռվից սիրեն: Բայց որ բոլորն ուզենան հեռվից սիրել, ախր էլ սիրելու առարկա չի մնա: Գնում են, ու «կարոտում եմ»: Գնում են ու. «Պապ ջան, էն փողը որ ուղարկել եմ, մի 8000 դրամ առանձնացրա, արագ ինտերնետ քաշի, որ «սկայպով» իրար հետ վիդեո խոսենք, համ էլ էրեխեքն արդեն մեծացել են, ուզում են պապի, տատի հետ խոսեն, պապ ջան...»:

Ես գնացողներին միշտ էլ դավաճան եմ համարել: Կտրուկ ու կոնկրետ: Առանց սեթևեթանքների: Առանց ձևեր թափելու: Առանց կոմպրոմիսների: Դավաճա՛ն: Ու վերջ: Ես չեմ դատում նրանց, առավել ևս՝ չեմ դատապարտում: Չեմ մեղադրում ու չեմ քարոզում: Սակայն էությունը դրանից չի փոխվում, որովհետև նրանց ամենամեծ դավաճանությունն այն է, որ դավաճանել են իրենք իրենց:

Բայց հիմա ես ինձանից էլ եմ վախենում, որովհետև այն օրը ինքզինքս «բռնացրեցի» խռովելու, հայրենիքից խռովելու մտքերի վրա: Համարյա, կարելի է ասել՝ ինքս ինձ բռնացրեցի դավաճանության վրա: Բայց ես գնացողը չեմ: Ինձ իմ հայրենիքից խռովացնող սրիկաները թող իզուր դրա հույսը չունենան: Ավելի լավ է մարդ իր հողի

⊃15

14➲

վրա անոթի մեռնի, քան թե օտարության մեջ ապրի, ամեն օր մեռնելով:

Հիմա միգրացիայի հաշվարկներ են անում, սոցհարցումներ են անցկացնում, պատճառներ են փնտրտում: Լավ են անում: Երևի կարևոր գործ է: Պետք է անել: Չէ՞ որ մեծերը, մանավանդ պաշտոնյա մեծահասակները թվերից էն կողմ` այլ լեզու չեն հասկանում: Բայց կուզեք, եկեք` էնքա՜ն պատճառ ասեմ, որ զահլաներդ գնա: Պատճառներ ասեմ, որ մտքներովդ էլ չի անցնում: Բայց երբ այդ պատճառները գումարում ես իրար, հասկանում ես, որ մարդիկ ավելի շատ անարդարությունից են գնում, քան թե կարիքից դրդված: Կարիքին ինչ-որ տեղ մի կերպ դեռ կարելի է դիմանալ: Իսկ անարդարությանը գրեթե ոչ մի կերպ դիմանալ չի լինում: Բայց մենք դիմանում ենք, չնայած` վա՛յ էդ դիմանալուն:

Վստահ եմ, հիմա կհակադարձեն, թե` «Ի՜հ, աշխարհում որտե՞ղ արդարություն կա»: Բայց մնացած աշխարհին եկեք հանգիստ թողնենք: Մանավանդ արդարությունը երբեք շատ չի լինում: Ինչպես և` փողը: Եվ դա նրանց միակ նմանությունն է: Իսկ երբ գրպաններում դրամը քչանում է, արդարության պահանջարկը կտրուկ մեծանում է: Իսկ երբ փողը շատ է... Հայաստանում երբեք շատ փող չի լինում: Համենայն դեպս` շատերի գրպաններում: Այսինքն` այնքան արդարություն չկա, որ մարդիկ մտածեն, թե բավարար քանակությամբ փող ունեն:

Եվ ընդհանրապես, տպավորությունն այնպիսին է, թե մեր երկրում արդարությունը խեղդվել է դատաիրավական բարեփոխումների ջրապտույտում, մոնոպոլ տնտեսության ճահճուտում և քրեական ամփոփագրերում տեղ չգտնող հանցագործությունների կեղտի մեջ: Եվ բավական է փողոցում մի քիչ երկար բարևես որևէ հին ծանոթի, չես էլ զգա, թե այս ձմեռվա գարնանային եղանակից խոսքն ինչպես սահուն անցավ մի թեմայի, որն անշեղորեն ավարտվում է` «Արա, դե արդարություն չկա, էլի՜...» ծորուն եզրակացությամբ, իսկ որպես համեմունք` «Երկիրը երկիր չի» քարուքանդող մահավճիռը, չհաշված` «Էրթալը կփրկի» (ինչի՞ց, ո՞ւմ կփրկի, ի՞նչ գնով) անհեթեթությամբ:

Բայց մենակ արդարությունը չի, այսինքն` անարդարությունը չի միայն, որ քոչվորի տրեխներ է հագցնում մարդկանց: Կարող ես խոսել մեկի, երկուսի, հարյուրի, տասը հազարի հետ: Եվ կհասկանաս, որ նրանք ուղղակի չեն հավատում սեփական հայրենիքին, սեփական երկրում սեփական հաջողությանը: Հուսահատ են: Իսկ հուսահատությունը դեպի բարոյալքում տանող ճանապարհ է: Եվ ճանապարհը տանում է սահմանից այն կողմ:

Իսկ ինչի՞ց ոգևորվեն: Ինչի՞ց: Կիսագրագետ ու գանձագող բյուրոկրատների՞ց, թե՞ մականունավոր պաշտոնյաներից: Հաստավիզ օլիգարխների՞ց, թե՞ հիմա սուրբ ու կույս ձևացող նախկին իշխանավորներից:

Կամ թե` ո՞վ պիտի ոգևորի: Օրնիբուն հեռուստացույցից ափռ-ցփռ դուրս տվող ջահելնե՞րը, իրենց` գոտկատեղից ներքև «հումորով» և նույն «մակարդակի» վրա լռված գիտակցությա՞մբ, որ անվերջ «էրթալը կփրկի»-ի քարոզ են անում: Հիմա, ասում են, թե եթերը մաքրելու են: Բայց վախենամ` «հեռուստաէպիլյացիան» չփրկի: Նախ` հեռուստամարդկանց հոգին է պետք մաքրել: Բայց, ինչ էլ ասվի, հեռուստատեսությունը որքան էլ ծուռ, այնուամենայնիվ, հայելի է: Եվ ամենից առաջ կյանքն է պետք մաքրել, կյա՛նքը: Մեր ամեն օրվա նիստուկացը:

# ԱՆՎԵՐՋ ՎԵՐԱԴԱՐՁ, ԹԵ՛ ՎԵՐՋՆԱԿԱՆ ԴԱՐՁ

Մեկ-մեկ գալիս էլ են: Մերո՛նք: Օտարության մեջ հայ մնալու գաղափարով զտված ու զուլալ հայությամբ: Գալիս են, ու ոչ թե տուրիստ, ոչ թե Գառնի-Գեղարդ-Էջմիածին երթուղով զմայլվելու, այլ վերջնականապես: Ապրելու համար: Գալիս են ու երևում է, որ «եկած են», որովհետև բարևելիս ժպտում են, աղբը պատուհանից չեն շպրտում, կարմիր լույսի տակ կանգնում են...

Հույս կար, որ երկքաղաքացիության օրենքը շատերի առաջ սեփական հայրենիքի դռները կբացի, որպեսզի հեռվից սիրած Հայաստանը ծոցագրպանում դրված, սիրտը ջերմացնող անձնագիր դառնա: Եկան: Ու դեռ էլի կգան: Բայց` հատուկենտ: Չէ, երկքաղաքացիություն ստացողները երևի շատացել են, բայց Ռուսաստանի մասին երազող վիրահայերի ու նաև անակնկալ «հայացած» վրացիների հաշվին: Երկքաղաքացիություն, որպես միջանկյալ անցումային ցատկահարթակ:

Իսկ մնացածը... Իսկ մնացածն` ի՛նչ: Ո՞վ կուզենա գնալ մի տեղ, որն անընդհատ փնովում ու անիծում են, անիծում ու փնովում են, որի մասին սարսափներ են պատմում այնտեղից փախածները, չհաշված` սարսափ-«ֆիլմերը», որ ամեն օր պտտում են արբանյակային ցավի եկած հեռուստաալիքները:

Բայց կան հայեր` Իրանից, Կանադայից, Ֆրանսիայից, որ իսկապես ուզում են Հայաստանի քաղաքացի լինել: Մեկընդմիշտ: Եվ երբ մի երկու տարի առաջ, այդպիսի մի հայուհու ՕՎԻՐ-ում կոշտուկոպիտ էին «սպասարկել», նա արցունքները չէր թաքցնում: Մենք` մտերիմներով, մխիթարում էինք, թե` «ոչինչ, համարիր, որ Հայաստանի քաղաքացի դառնալու առաջին մկրտությունդ անցար»: Եվ «ջերմ» վերաբերմունքից, «մաղարիչի» ակնարկներից անկախ, մեր ընդհանուր ծանոթուհին Հայաստանի քաղաքացիություն ստանալու դիմումն, այնուամենայնիվ, լրացրել էր` արցունքն աչքերին: Ու երբ ներկաներից մեկը դա իմացավ, չկարողացավ իրեն զսպել, թե` «Խե՞նթ ես, ի՞նչ է...»: Ասենք, մնացածս էլ մի բարի պտուղ չէինք, որովհետև մեր հայրենակցուհուն նայում էինք այնպես, ասես այլմոլորակային տեսած լինեինք:

Եվ ամեն անգամ, երբ այդ պահը հիշում եմ, վատ եմ զգում` մեր անտաշ պահվածքի համար: Վատ եմ զգում թե՛ մեր մտածածի, թե՛ ինձ անծանոթ, կոշտուկոպիտ պաշտոնյայի բռիության համար:

Իսկ քանի-քանիսն են այդպես եկել, հիասթափվել ու գնացել: Ո՞վ է հաշվել: Ո՞վ կարող է հաշվել: Կամ թեկուզ` հաշվեն: Շա՞տ բան կփոխվի, եթե պարզվի, որ «քանի-քանիսը» 100 հոգի են կամ` 1000: Թեկուզ 10-ը լինեն: Մի՞թե դրանից երևույթն ավելի ընկալելի է դառնում:

Ու մտածում ես, թե ի՞նչն է պատճառը, որ յուրայինին օտարից վատ ենք վերաբերվում: Երևի այնքան «սփյուռքահայ» ենք ասել, որ մոռացել ենք` ախր արմատը «հա՛յ»-ն է: Հա՛յը: Մեր նման: Գուցե մեզանից լավը, գուցե վատը: Բայց` հայ:

Իսկ մենք այդ ամեն ինչը, այդ հայությունը անեկդոտ ենք դարձրել, ավելի հաճախ` ձեռառնոցի: Տարին երկու անգամ հիշում ենք` պետական մակարդակով, թե` «քույրե՜ր, եղբայրնե՜ր, մի քիչ փող ուղարկեք...»: Կամ ավելի վատ` «Եվրատեսիլի» ժամանակ (իբր մի շա՜տ կարևոր իրադարձություն է) մի՛ խնայեք, քվեարկեք Հայաստանի ներկայացուցչի օգտին: Որ ի՞նչ: Չես հասկանում: Բան են գտել. «Եվրատեսիլ»` ինչ-որ *суррогат*: Կարելի է կարծել, որ եթե «ճ» կարգի այդ մրցույթում Հայաստանը 3-րդ տեղն ընկնի, երկիրը երջանկության մեջ կլողա: Բայց սա առանձին խոսակցության նյութ է:

Չէ, իհարկե, մենք էլ ենք ցանկանում, որ մեր երկիրը արժանավոր կերպով ներկայանա աշխարհին, թեկուզ «ճ» կարգի մրցույթում: Բայց եթե մենք մեր մշակույթի ու երգարվեստի համար ենք ցավում, ավելի լավ չէ՞, օրինակ, մտածենք, թե ո՞նց անենք, որ երաժշտական դպրոցները բոլոր ցանկացողներին նյութապես ու ֆիզիկապես հասանելի լինեն, իսկ երաժշտության դպրոցների դասատուներն էլ աշխատավա՛րձ ստանան, այլ ոչ թե` ողորմություն հիշեցնող վիրավորական գումար...

Սփյուռքահայից Հայաստանահայ դառնալու ճանապարհին ծանոթներիցս մեկը, տիպիկ «հայաստանցու» պես, նեղացավ ու գնաց: Ասաց` առհավետ: Եվ երբ մի կես տարի անց նրան նորից տեսա Հանրապետության հրապարակի մոտ, զարմանքս մի կերպ զսպելով` ժպտացի: Նա էլ ժպտաց, ողջագուրվեցինք ու. «Գիտեմ, թե ինչ պիտի ասես, բայց այս մեր երկիրը կարծես անբուժելի հիվանդություն լինի. տառապում ես, սիրտդ ցավում է, վատ ես զգում, ուզում ես մոռանալ, բայց մեկ էլ մի գեղեցիկ օր հասկանում ես, որ չես կարող մոռանալ, ավելին` չես կարող առանց իրեն, արդեն լրիվ Հայաստան ես վարակվել: Ու այսպես` անվերջ վերադառնում եմ...»:

Ես ոչինչ չասացի: Միայն ավելի լայն ժպտացի ու մաղթեցի. «Տա Աստված, որ անվերջ վերադարձդ մի գեղեցիկ օր վերջնական դարձ դառնա»: Եվ տա Աստված, որ մի սիրո հիվանդության պատմությունը մի օր արտագրեմ, որպես մի սիրո պատմություն: Պատմություն, որ հատկապես դրսերում հանգրվանած ամեն հայի համար սկսվի մեծ բանաստեղծի խոսքերի հակառակ տարբերակով` «Ախր մենք ինչպե՞ս չվերկենանք` գանք, ախր մենք ինչպե՞ս ուրիշ տեղ մնանք...»:

***Արմեն ՀԱԿՈԲՅԱՆ***

# Տուշպա Արարատյան թագավորության մայրաքաղաքը



## Վիմափոր քարայրները Արարատյան թագավորության արքաների դամբարաննե՞ր

Վանի ժայռը բազմաթիվ վիմափոր քարայրներ ունի («Խորխորի մեծ», «Խորխորի փոքր», «Նեֆտ-կայու», «Իչկալա», «Մեծ» և այլն: «Խորխորի մեծ» քարայրը հայտնի է նաև Արգիշտիի սենյակ անվամբ): Այս քարայրները նման են մեկ ընդհանուր մտահղացման մաս կազմող առանձին կառույցների, շատերն ունեն սրահ, սրանից ճյուղավորվող սենյակներ: Խորենացին այս քարայրները բնորոշում է «եզակի», «աշխատատար», «հրաշագործ» բառերով, սակայն հրաժարվում է սրանց նշանակության մասին որևէ տեսակետ հայտնել. «Դրանց շինության որպիսությունը մենք ոչ ոքից ճշգրտությամբ չենք լսել, ուստի հարմար չենք գտնում մեր պատմության մեջ հյուսել, այսքանը կասենք, թե սրանք բոլոր թագավորական գործերի մեջ վեհագույնն են համարվում»:

Ուսումնասիրողներից շատերը գտնում են, որ վիմափոր քարայրները եղել են Արարատյան թագավորության արքաների դամբարաններ: Այս տեսակետին հետևողները, ի թիվս այլ պնդումների, բերում են նաև քարափոր դարակների գոյությունը որոշ անձավներում:

Անկախ նշանակությունից՝ Վանի ժայռի վիմափոր քարայրները նմանատիպ շինության բացառիկ համամարդկային արժեք ներկայացնող նմուշ են և խոսում են ժամանակակիցների շինարարական բարձր մշակույթի մասին:

## Ռուսախինիլի՝ Թոփրակ կալե

8-րդ դարում Ասորեստանի Թիգլաթ Պալասար թագավորն արշավում է Հայաստան, գրավում և ավերում Տուշպա քաղաքը, սակայն միջնաբերդը չի կարողանում նվաճել: Ռուսա արքան հին քաղաքից դեպի հյուսիս-արևելք հիմնում է նոր բնակավայր, իսկ Ագռավի լեռան լանջին՝ Ագռավի քար կոչված վայրում, կառուցում է նոր ամրոց՝ Ռուսախինիլի (Թոփրակ կալե): Ռուսախինիլիի նկարագրությունը տվել է հայ մեծ վիպասան Րաֆֆին:

«Թոփրակ կալեի լեռան մեջ նույնպես գտնվում են շատ այրեր, քարանձավներ, ստորգետնյա անցքեր, ինչպես Շամիրամի բերդում: Դրանցից ոչ մեկը բնական է, բոլորն էլ փորված են ամենաամուր ժայռերի մեջ, և նրանց այժմյան գեղեցկությունը բավարար ապացույց է, թե որքան զարգացած է եղել այդ արհեստը: Այրերից միայն մեկի մեջ մտանք, որ կոչվում է Ջըմփ-Ջըմփ մաղարա, այսինքն զմփզմփալով ձայն հանող այր: Ամենաթեթև ձայնն այդ քարանձավի մեջ արձագանք է տալիս: Ժայռի մեջ բացվում է մի մեծ մուտք, որը հարյուրավոր քարե սանդուղքներով իջնում է դեպի լեռան խորքը: Քարի մեջ փորված երկու լուսամուտները վերևից խիստ աղոտ լույս են ձգում այդ ստորգետնյա վիրապի մեջ: Քարե սանդուղքի վերին աստիճանի մի կողմում բացվում է մի ընդարձակ քառակուսի այր, դա է, որ կոչվում է Ջըմփ-Ջըմփ մաղարա: Այդ անցքի միջից մի առանձին անցք տանում է դեպի երկրի խորքերը, բայց ո՞ւր է գնում, որտե՞ղ է վերջանում, Աստված գիտի»:

## Խալդի աստծո տաճարը Մուսասիրում (Արդինիում)

Ռուսախինիլիում կատարվել են պեղումներ, հայտնաբերվել է հնագիտական բավական հարուստ նյութ, սակայն պեղումները մնացել են անավարտ, և ճարտարապետական տեսանկյունից անհնար է ամբողջական պատկերացում կազմել ամրոցի մասին: Բացվել է միջնաբերդի մի մասը՝ 20-25 կարասներով, և մի շենքի, ենթադրաբար՝ տաճարի քարե հիմնապատվանդանը: Ընդհանրապես, Արարատյան թագավորության շրջանի ամբողջական պաշտամունքային շինություն (տաճար, մեհյան) չի հայտնաբերվել: Դրանց մասին միակ պատկերացումը տալիս է ասորական Սարգոն Բ արքայի պալատի պատում հայտնաբերված բարձրաքանդակը, ուր պատկերված է Խալդի աստծո տաճարը:

Մուսասիրը (ասորերեն, ըստ Արարատյան սեպագրերի՝ Արդինի) գտնվել է Վանի թագավորության հարավարևելյան կողմում, գրեթե Ասորեստանի սահմանին (այն ավերել են ասորիները): Եղել է ոչ միայն Արարատյան թագավորության, այլև ողջ արևելքի խոշոր հոգևոր և պաշտամունքային կենտրոն: Ըստ հայտնաբերված պատկերի՝ տաճարը կառուցված է բարձր հիմնապատվանդանի վրա, ճակատի կողմից ունի վեց սյունից բաղկացած սյունաշար, վերին մասում պսակված է եռանկյունի ճակատոնով (այս ճակատոնի տիպը հետագայում հանդիպում է հունական ճարտարապետության մեջ. որպես ակնառու օրինակ կարող ենք հիշել Գառնիի հեթանոսական տաճարը): Շատ ուսումնասիրողներ գտնում են, որ Արարատյան թագավորության ճարտարապետությունը մեծ ազդեցություն է գործել ողջ տարածաշրջանի ճարտարապետության վրա, մասնավորապես՝ երկրի արևմտյան հարևանների վրա (Պափլագոնիա, Փռյուգիա), այստեղից անցել Հունաստան, եղել է այդ ժամանակաշրջանի և տարածաշրջանի ճարտարապետական նախատիպերից մեկը և այդ միջոցով ազդել բոլոր ժամանակների արևմտյան ճարտարապետության վրա:

## Չարխի ֆալաք եւ Միհերի դուռ

Ռուսախինիլիից (Թոփրակ կալե) վեր՝ Ագռփի լեռան բարձր լանջին, գտնվում են Չարխի ֆալաքը և Միհերի դուռը: Առաջինը լեռան գագաթից դեպի նրա խորքերն իջնող անցք է, որն, ըստ ավանդության, տանում է դեպի Բախտի անիվը՝ Չարխի ֆալաքը: Միհերի դուռը գտնվում է միևնույն ժայռի շարունակությամբ, արևմտյան կողմում: Այն ճակատը տաշված քարաժայռի հատված է, քառանկյունի մուտքի ձևով առնված շրջանակի մեջ: Ըստ «Սասնա ծռեր» էպոսի, այստեղ՝ Ագռավաքարում է փակվել Փոքր Միհերը, այդ իսկ պատճառով ժողովուրդն այն կոչել է Միհերի դուռ: Միհերի դռան ողջ հարթ մակերեսը ծածկված է սեպագրերով: Ըստ վերծանման՝ Միհերի դռան վրա գրված են Արարատյան թագավորության աստվածների անունները, նրանց մատուցվող զոհերի քանակն ու կարգը:

Միհերի դռան նման մի ժայռ էլ հայտնաբերվել է Վանա և Ուրմիա լճերի միջակայքում:

## Շամիրամի ջրանցքը

Տուշպան ունեցել է իր ժամանակի համար անհավատալի կատարելության հասած ջրաբաշխ համակարգ: Հռչակավոր է Շամիրամի ջրանցքը (իրականում, ըստ Կուտեպանց գյուղի մոտ հայտնաբերված մի սեպագիր արձանագրության, այն կառուցել է Մենուա արքան, որը գահակալել է 810-786 թվականներին), որն ունի մոտ 70 կմ երկարություն, տեղ-տեղ՝ 4,5 x 1,5 մ կտրվածք, սնվել է Մնձկերտ գյուղի մոտ գտնվող աղբյուրներից և ջրաբաշխ բարդ համակարգի միջոցով ջուր մատակարարել Տուշպա քաղաքին և միջնաբերդին:

Ջրամատակարարման ինքնուրույն համակարգ է ունեցել նաև Ռուսախինիլի ամրոցը: Այն սկզբնավորվել է Ռուսայի լճից (Քեշիշ գյոլ): Ոռոգման նպատակով արհեստական ջրամբար է կառուցվել Վարագա լեռան լանջին:

*Հակոբ ՍՈՂՈՄՈՆՅԱՆ*

# ԵՐԿՈՒ ՀԱՅ ՄԻԼԻԱՐԴԱՏԵՐ

«Forbes» ամսագիրը հրապարակել է աշխարհի ամենահարուստ մարդկանց ամենամյա վարկանիշային ցուցակը: Այն գլխավորում է Մեքսիկայի հեռահաղորդակցության ոլորտի մագնատ Կարլոս Սլիմ Էլուն, որի կարողությունը կազմում է 53.5 միլիարդ դոլար: Նախկինում աշխարհի ամենահարուստը համարվող, Microsoft ընկերության հիմնադիր Բիլ Գեյթսը երկրորդ տեղում է՝ 47 միլիարդ դոլար կարողությամբ: Ցուցակում տեղ են գտել նաեւ երկու հայեր: Նրանցից մեկը 307-րդ հորիզոնականում հայտնված Քըրք Քըրքորյանն է՝ 3.1 միլիարդ դոլար կարողությամբ: Վերջինս 2008-ին 31-րդ հորիզոնականում էր: Իսկ մյուսը՝ ռուսաստանաբնակ Դանիիլ Խաչատուրովը՝ 1.2 միլիարդ դոլար կարողությամբ:

